


# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15։ ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից


## Այս համարում 11•86




*Հանձնված է տպագրության 20.VIII. 1986 թ.։ Ստորագրված է տպագրության 15.X.1986 թ.։ ՎՖ 10859։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակը՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 69182։ Պատվեր՝ 1608։ Գինը՝ 15 կոպ.։*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2։*

Сдано в набор 20.VIII.1986 г. Подписано к печати 15.X.1986 г. Формат 70×100 1/16. ВФ 10859. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 69182. Заказ 1608. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.


Շապիկի 1-ին էջին՝ «Վերածնունդ» գոբելեն
Գործ՝ Գրիգոր Խանջյանի

ԽԱՉԻԿ ՄԱՆՈՒԿՅԱՆ

## Արև

Դու վզկապիս նման կարմիր
Ծիծաղում ես լեռան ուսին,
Արեգակ իմ, երգդ խառնիր
Երազներիս ոսկե հյուսին,
Որ տաքանան ու բողբոջեն,
Լցվեն պես-պես ծաղիկներով,
Որ թռչունի նման թռչեն՝
Քո շողերի մեջ օծվելով։

Դու խարույկ ես մեծ, այնքան մեծ
Քո կրակը չի մոխրանում,
Ծավալվում ես երկնքի մեջ
Եվ ինքդ քեզ ուրախանում,
Դու, երկնային մանուկ կայտառ,
Մեր աչքերի մեջ ես ցոլում,
Քո հայացքը՝ խինդ ու ծիծաղ,
Քո հայացքը՝ գարո՜ւն, գարո՜ւն...




Նոր Նախիջևանի ծխական հին դպրոցում, փոքրիկ որբ տղան, որ նոր-նոր էր սովորել կարդալը, մինչև վերջ անգիր արտասանում էր Ղ. Աղայանի «Տորք Անգեղ» լեգենդը, և բոլորը զարմացած ու հիացած լսում էին:

Տղան խոշորկեկ էր: Մինչև հիմա էլ գյուղի հին տատերը, երբ խոշոր տղա է ծնվում, ձեռքերը կարկառում են վեր ու ցնծուն աչքերով գոհություն բարբառում՝ փառքդ շատ, տեր աստված, հողի մարդ ծնվեց: Նրանք կյանք ու աշխարհ ճանաչող իրենց հայացքով մի անգամ նայում են երեխային ու այլևս վստահ են, որ նա իր մարմնի ուժը միմիայն հողի վրա աշխատանք թափելով է ծախսելու:

Տղան գրքեր կարդալու հետ զուգընթաց նաև իր ուժին ու հասակին արժանի աշխատանքի էր վարժվում, որովհետև մտավոր աշխատանքը նս աշխատանք է հողի հետ, չէ՞ որ դրանով կարող ես ճանաչել մարդու և հողի կապը և օգնել երկուսին էլ:

Արդեն երիտասարդ Ալեքսանդրը շատ լավ էր հասկանում, թե ինչ է կատարվում իր շուրջը: Ռուսաստանում սկսվել էին հեղափոխական խլրտումները՝ տեղի էին ունենում գործադուլներ ու ցույցեր: Մոսկվայի արևելյան լեզուների ինստիտուտի ուսանող Ալեքսանդր Մյասնիկյանը 1905 թվականին ցուցարարների շարքում էր, իսկ 1906 թվականին, երբ ընդամենը քսան տարեկան էր, Ռոստովի կուսակցական կազմակերպությունը նրան ընդունեց ՌՍԴԲԿ շարքերը:

Այլևս հստակ էր ուղին, վճռական էր նպատակը: Ալեքսանդր Մյասնիկյանը գլխովին նվիրվում է հեղափոխության գործին: 1910 թվականին գրում է «Միքայել Նալբանդյան» ծավալուն հոդվածը, որտեղ արժեքավորում ու գնահատում է հայ հեղափոխական-դեմոկրատի գործունեությունը: Հեղափոխությունը միայն զենքով չի լինում, հեղափոխությունը ամենից առաջ մարդկանց մտածողության վերափոխումն է: Մյասնիկյանը հոդվածներ էր գրում հայ մշակույթի և առհասարակ տնտեսության մասին և պարզաբանում հարցեր, որոնք շատ էին կարևոր նոր կյանք սկսելու համար: Օրինակ, նա համոզված էր, որ յուրաքանչյուր ժողովրդի անհրաժեշտ է զարգացած, բարձր լեզու, քանզի լեզուն է ժողովրդի մշակույթի գագաթնակետը, և եթե որևէ ժողովուրդ չունի այդպիսի լեզու, ապա նա անպայման ետ է մնում հասարակության զարգացումից: Լեզուն ժողովրդի դեմքն է, և յուրաքանչյուր ոք պետք է իր մայրենի լեզվին վերաբերվի խնամքով:

1886 թվականի փետրվարի 9-ին Նոր Նա-



*Ալ. Մյասնիկյանը (կենտրոնում) Նախիջևանի գիմնազիստների հետ։*

խիջևանի հին տատիկների աչքը շատ էր ճիշտ գնահատել խոշորկեկ նորածնին։ Նա, իրոք, իր խոշոր մարմնի ուժն ու տաղանդը ծախսում էր երկրի ու ժողովուրդների բարօրության համար։ Սկսվել էր նորելուկ սովետների դեմ ինտերվենցիան, և քաղաքացիական պատերազմի հրդեհ էր բռնկվել երկրում։ Մյասնիկյանը զորահրամանատար էր Արևմտյան ռազմաճակատում, այսինքն՝ Բելոռուսիայում, որտեղ կազմակերպեց հեղափոխությունն ու կանգնեց Բելոռուսիայի կուսակցության ու իշխանության գլուխ՝ հմտորեն ղեկավարելով երիտասարդ հանրապետության առաջին քայլերը։ Այնուհետև ընտրվում է Արևմտյան ռազմաճակատի գլխավոր հրամանատար, սովետական զինված ուժերի առաջին ընտրված հրամանատարը, որն իրեն ընտրող համագումարին ասում է. «Ես վստահությամբ եմ ընդունում գլխավոր հրամանատարությունը, որը դուք ինձ եք հանձնում, որովհետև ես գիտեմ, որ մասսան ինձ հետ է»։ Իսկ 1917 թվականի դեկտեմբերին Մյասնիկյանին նշանակում են զինված ուժերի հրամանատարի պաշտոնակատար։ Այնուհետև, անձամբ Լենինի առաջարկով նրան նշանակում են Արևելյան ռազմաճակատի հրամանատար, միաժամանակ նաև Բելոռուսիայի կենտրոնական գործադիր կոմիտեի ու կուսակցության կենտկոմի բյուրոյի նախագահն էր։ Զինվորական ու պետական գործունեությունը նա կատարում էր մի այնպիսի ժամանակաշրջանում, երբ սովետական երիտասարդ պետությունը դեռ իր առաջին քայլերն էր անում՝ շրջապատված ներքին ու արտաքին թշնամիներով։ Եվ այդ ծանր ժամանակներում շատ էր կարևոր նաև թիկունքում տարվող աշխատանքը, անհրաժեշտ էր անընդհատ համալրել ու կայունացնել բանակը, և 1919 թվականից նա աշխատանքի է նշանակվում Մոսկվայում՝ որպես զինվորական կազմակերպիչ, հետո՝ Մոսկվայի կոմիտեի քարտուղար, որտեղ աշխատանքը նույնքան մեծ էր, որքան ճակատում։

1921 թվականին Մյասնիկյանը ուղարկվում է Կովկաս՝ Հայաստան։ Իսկ Հայաստանը սովյալների երկիր էր, գաղթականների երկիր, ուր մոլեգնում էին համաճարակները։ Մեծ տառապյալը՝ Հայաստան երկիրը, սպասում էր իր ուժեղ զավակներին, որոնք պիտի արյուն-քրտինքով կենդանացնեին, շունչ տային նրան։ Ալեքսանդր Մյասնիկյանը նշանակվում է Հայաստանի նորաստեղծ հանրապետության ժողովրդական կոմիսարների խորհրդի առաջին նախագահն ու, միաժամանակ, ռազմական ժողկոմը։ Ինչի՞ց սկսել։ Հարկավոր էր ամենից առաջ կազմակերպել երկրի կառավարությունը և ոգի ու եռանդ հաղորդել ժողովրդին։ Անհրաժեշտ էր հաց հայթայթել սովյալների համար։ Անհրաժեշտ էր կազմակերպել արդյունաբերությունն ու ոտքի կանգնեցնել գյուղատնտեսությունը։ Ա-



*Արևմտյան և Արևելյան (չեխական) ռազմաճակատների գլխավոր հրամանատար Ալ. Մյասնիկյանը (կենտրոնում) կարմիրբանակայինների ջոկատի հետ։*



*Ալ. Մյասնիկյանը 1925 թվականին։*

մայի, խանձված դաշտերում արդեն մի քանի տարի էր, ինչ չէր լսվել մաճկալի հորովելը, և քայքայվել էին անգամ գյուղերը։ Իսկ ամենակարևորը՝ անհրաժեշտ էր ժողովրդին ցույց տալ, թե ինչ են բերում նոր կարգերը։ Դրա ամենամեծ փաստը երկրի սահմանադրության մշակումն էր, որով դարեր ի վեր պետականությունից զուրկ հայ ժողովուրդը պետականություն էր ձեռք բերում։

Հացի համար պայքարի հետ ջանքեր էին թափվում նաև լեզվի, գրականության ու առհասարակ արվեստի ուղղությամբ։ Կառուցվում էին շենքեր, քաղաքներ ու գյուղեր։ Ավերակների միջից վերակենդանանում էր երկիրն Հայաստան։ Ամբողջ աշխարհով մեկ սփռված հայությանը հողը կանչում էր հայրենիք, և դիմավորողների մեջ էր կառավարության ղեկավարը։ Վերադառնում էին տարագիր գրողներ ու արվեստագետներ, ուսուցիչներ ու ինժեներներ, և, ինչպես էպոսում Դավիթն էր օր-օրի մեծանում, այդպես էլ երկիրն էր օր-օրի ուժեղանում։

Մյասնիկյանը նամակով տուն է կանչում Մարտիրոս Սարյանին, թե՝ եկ, երկրին ու ժողովրդին քո տաղանդը նվեր բեր,- քո հերթին օգնիր, որ զորանանք ու հաղթահանված դուրս գանք արհավիրքներից։ Այդ օրերին Հովհաննես Թումանյանը, որը իր ժողովրդի թշվառությունների ականատեսն էր ու իր մեծ խոսքով նրան զորավիգ եղողներից, գրում էր․ «Նախագահ Մյասնիկյանը և իր ընկերները արժանի են ամեն գովասանքի և աջակցության։ Ես համոզված եմ. մոտիկ ապագան պիտի ապացուցի իմ խոսքերի ճշմարտությունը։ Ամեն կողմից պիտի նրան սիրեն ու գործակցեն։ Սրանց վերաբերմունքը դեպի գրականությունն ու գեղարվեստը աննախընթաց լավ է։ Դա դեռ սկիզբն է։ Բայց եթե էսպես շարունակվի, որին չեմ կասկածում, մեր աշխատանքում, կարող եմ ասել, արդեն ապահով են գրականությունն ու գեղարվեստի մարդիկ»։

Իսկ այս մեծ մարդու մեծ կենսագրությունը սկսվել էր հենց այն օրերից, երբ փոքրիկ տղան բանաստեղծություններ էր սովորում ու ոգևորված արտասանում։ Որքան ճիշտ էին գուշակել հին տատերը խոշորկեկ տղայի ապագան, և որքան ճիշտ էին հին պապերը, որ տղային լուռ ու համբերությամբ սովորեցնում էին հողի հետ վարվելու վարքը։ Նրա կյանքը մեզ սովորեցնում է, որ պետք է շատ կարդալ, սովորել իր հայրենիքի ու ժողովրդի պատմությունը, սովորել, թե ինչպես կարելի է հայրենիքի նկատմամբ սերը ճիշտ կերպով օգտագործել, արժանանալ հայրենիքի սիրուն ու գնահատանքին, իր կյանքը հյուսել նրա պատմությանը։

ՀՐԱՉՅԱ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

# « Երեկվա օրից մեկ ի՞նչ մնաց... »

Նկարը՝ ՌԱՖԱՅԵԼ ԲԱԲԱՅԱՆԻ

Հարություն թոռանը Գարեգին պապը հետն անտառ է տանում: Հարութիկը վեց տարեկան է, իսկ Գարեգին պապը արդեն պապի տարիքի է: Թոռը հետն էլ չլինի՝ զգացողը կզգա, որ նա պապ է: Բայց պապի պապությունը թոռան հետ զրուցելիս է երևում, քայլելիս, խրատելիս, բան սովորեցնելիս: Դուք պիտի մտածեք, որ Գարեգին պապը Հարութիկ թոռանն անտառ է տանելու գարնանը, մայիսին, ծառ ու ծաղկունքի էն թեժ ժամանակ: Պիտի մտածեք, որ Գարեգին պապը Հարութիկ թոռան հետ անտառ է գնալու ամռանը, երբ անտառը... Աշնանը... Ոչ գարնանը, ոչ ամռանը, ոչ էլ աշնանը: Պարզ է, տակը մնաց մի ձմեռ: Բայց վեց տարեկան, ոտը նոր յոթում դրած Հարութիկին ինչո՞ւ է ձմռանն անտառ տանում: Անտառի ձմեռ որ ասում եք, ճըրթ-ճըրթ ցուրտ եք պատկերացնում, ատամներդ կփկփացնում եք իրար: Ձմռան ամիս է, ճտահար ձյուն է, բայց հաճելի արև է: Թող հաճելի լինի, բայց ձմռանն ի՞նչ կա անտառում: Լսող-տեսնողներն արդեն ետևից ասում են. «Գարեգինը խելքը հացի հե՞տ է կերել, որ մի մատ երեխային առել ու ծմակ է տանում»:

Տարվա ինչ եղանակ էլ լինի՝ պապը պիտի առջևից քայլի, թոռը՝ ետևից: Պապը պիտի առանց շուռ գալու ձայն տա՝ գալիս ե՞ս, արի: Թոռը պիտի պապի թիկունքին նայելով ձայն տա՝ գալիս եմ, դու գնա...

Պապը պիտի թոռանն անտառ տաներ, որովհետև Հարութիկն ուզում էր տեսնել նապաստակի, աղվեսի, գայլի, եղնիկի, անտառի գել ու գազանների հետքերը ձյան վրա: Հարութիկը պատկերացնում էր հետքերը, մեկ հրճվում էր, մեկ էլ վայ թե վախենում էր: Ախր, նապաստակ, աղվեսը՝ հեչ, բա որ գայլի հետք, հենց արջի հետք տեսնի՞: Հենց հետքերի վրա էլ երևան գայլն ու արջը: Արջը քնած է: Բայց, մարդ է, հանկարծ քունը չտարավ՝ արթնացավ ու սկսեց շուրջը աչք ածել՝ տեսնի ամեն ինչ տեղո՞ւմ է... Հարութիկը միշտ հարցնում է.

— Պապիկ, ասա, գայլի իզը ձյան վրա ո՞նց է լինում, արջի իզը ձյան վրա ո՞նց է լինում:

Արի, Գարեգին պապ, տասներորդ անգամ ասա՝ հիմա ո՞վ է իզ ասում, որ դու ասում ես: Թե ինքն ասում է՝ մեծ մարդ է, ասում է, մեծահասակներն ասում են՝ թող ասեն, իսկ դու պիտի ասես՝ ոտնահետք: Գրքերում հազար ու մի գազաններ են նկարված, թռչուններ, նրանց հետքերը պարզ տեսնում ես: Բայց Հարութիկն ուզում է իր աչքով տեսնել... Նաև արջի հետքերը ձյան վրա նկարված: Ամեն մի թևավորի ու ոտավորի հետքերը ուզում է տեսնել:

Տեսնել, աչքով տեսնել: Ու տեսնել պապի հետ: Թող պապը տեսնի, որ ինքը սրտոտ է, որ ինքն անտառի մեջ... երեխա չէ, որ չի զարմանում, թե ո՞ւր են կանաչները, առուներն ինչու են սառել:

Գնում-գնում են պապ ու թոռ: Ոչ, պապը հրացան չունի: Հրացանով անտառ մտնողներին պապը չի էլ բարևում: Մի մարդ, ասում է, որ անմեղ կենդանիների վրա կրակի, էլ նրանից ի՞նչ մարդ: Կենդանիներ են, թող ապրեն, ոչ քո հացին են, ոչ քո ջրին: Թեկուզ լինեն քո հաց ու ջրին, ուրեմն պիտի կրակե՞ս...

— Աշխարհում անանուն ոչինչ չկա,— ասում է պապը,— ծառն էլ անուն ունի, ծաղիկն էլ անուն ունի: Միայն մարդն է, որ թե կյանքում մի լավ գործ չի անում, մնում է անանուն:

Պապ ու թոռ են, անտառ են մտել: Առվակը սառցե հայելի ունի: Հայելու վրա փայլում է մեծ հաճարենու ճյուղարանքներից ընկած արևը: Սառցի տակից երևում է աներգ առուն: Պապը կռացավ, բռունցքով խփեց սառույցի բարակ շերտին, ու պապի փափախի չափ մի տեղ բացվեց: Պապը մի քիչ կացավ, ապա կռացավ, խմեց: Ո՞վ է ասել, թե սառցա-



կալած ջուրը խմելը վնաս է: Բայց Հարութիկին չթողեց, որ խմի:

— Կոկորդդ կցավի,— ասաց:— Իսկ ես սովոր եմ: Բայց արի բուռ անեմ՝ մի բուռ խմի:

Խմեց թոռը պապի բռից, մի պահ նրան թվաց, թե պապի բուռն աղբյուր է ու ինքն աղբյուրից է ջուր խմում:

Ձյուների միջով գնացին-գնացին, մեկ էլ հանկարծ պապը ետ նայեց ու հարցրեց.

— Հարութիկ, ծառերն իրարից ինչո՞վ են ջոկվում:

— Պտուղներով,— հպարտ ասաց Հարութիկը:

— Պտուղներով, համաձայն եմ: Բայց հիմա ձմեռ է, և ոչ մի ծառի վրա պտուղ չկա: Հիմա ո՞նց ջոկենք:

— Տերևներով:
— Այս ձյունի տակ հիմա անտառի բոլոր ծառերի տերևները հավաքվել ու խաշամ են դարձել: Ծառերի ճյուղերին մնացած տերևներն էլ… էն չեն: Ո՞նց ջոկենք, ասա:
— Ամենաբարձրը, հզորը, ուժեղը կաղնին կլինի: Հետո հաճարենին կլինի, հետո…
— Հարութիկ, ես հիմա փակում եմ քո աչքերը, տանում եմ, կանգնեցնում մի ծառի մոտ և ասում եմ՝ առանց վերև նայելու ասա, գուշակիր, թե ինչ ծառ է: Ինչո՞վ պիտի որոշես:
Հարութիկը մտածեց. ականջ կդնի, կլսի, թե ինչ թռչունների ձայներ են լսվում, հետո ինքն իրեն ժխտեց՝ թռչուն է, ամեն ծառի վրա էլ կիջնի: Հետո ժպտաց.
— Կեղևով, պապի, կեղևով կջոկեմ:— Ու հիշեց պապի խոսքերը.
«Տարիքն առած կաղնու կեղևը ակոսապատ է, ոնց որ վար արած մաճկալի ձեռքեր լինեն: Հաճարենու կեղևը ավելի նուրբ է, համաչափ, մեծերս ասում ենք՝ սոթլիկ, բայց դու ասա համաչափ…» Այսպես ամեն մի ծառի կեղևի, տերևի նկարագրությունը պապը դասի նման պատմել է իրեն: Բայց ինքն եկել է գազաններին իզ… իզ չէ, հետք տեսնելու: Հետքերով պետք է լցված լինի ամբողջ անտառը: Բայց ոչ հետք կա, ոչ էլ հետքատերեր կան:
Հենց ձյան վրա նստեցին: Մի կտոր հաց կերան: Հետո պապն զգաց, որ արևը թեքվել է, որ թոռը դեռ պինդ չէ, առաջին անգամ է ձմռանն անտառ գալիս, ասաց.
— Բալա ջան, դու մեր եկած իզը բռնի ու գնա ուղիղ տուն, ես էլ մի քիչ չոր փայտ կհավաքեմ, կկիտեմ, էգուց-էլօր ձիով, իշով կգանք, կտանենք: Դու գնա, շվշվացնելով գնա: Արևիդ մատաղ, գնա: Հետո էլի կգանք, շատ կգանք ու երկար կմնանք իրար հետ:
Պապին լսող Հարությունը բռնել է տուն տանող ճամփան ու ոնց որ անտառում հազար գազանի հետք է տեսել ու խառնել իրար, հազար գել ու գազանի նայել է սրտոտ աչքերով: Տուն է գնում: Բայց դեռ անտառի եզրը չհասած, հանկարծ ճամփան ծռեց: Հիշեց, որ ինքն արդեն վեց տարեկան է, տոր յոթնումն է, մեծ տղա է, իսկ մեծ տղան ի՞նչ իրավունք ունի անտառից դատարկ տուն մտնելու: Ինքն անցած ամառ մոռ է քաղել, տանձ ու խնձոր է հավաքել անցած աշնանը, բայց հիմա ոչ մոռ ու մոշի ժամանակ է, ոչ էլ տանձ ու խնձորի: Հիմա ձմեռ է, տանը, վառարանում, փայտ են վառում: Ինքն անտառից մինչև հիմա, մեծ տղա է՝ դեռ փայտ բերած չկա: Կըթեքվի, մի չոր ճյուղ կառնի ուսին ու կըգնա: Ուժեղ լիներ՝ Տորք Անգեղի նման մի գերան շալակեր… Հը՞… Պապն ասել է՝ թոռը պիտի պապի հետքով գնա: Հիմա մի լատան, գերան, ուժը պատած մի չոր ճյուղ կդնի ուսին, կբռնի տան ճամփան ու… Ի՞նչ լավ է, անտառից մենմենակ, փայտը ուսին տուն է գնում: Հը՞… Մեկ էլ ըհը… Ոտքի տակ էս ի՞նչ տրաքոց էր ու հենց ոտքից էլ բռնեց…
Հարութիկը գոռում է.
— Վա՜յ, մամա ջան, վա՜յ…
Եվ հանկարծ զգաց, որ ինքը գոռում է, գոչում է, բայց ձենը փորից դուրս չի գալիս, կոկորդում խեղդվում է: Եվ զգաց, որ ինքը սառած-կանգնած է, իսկ ոտքը մի գել ու գազանի երախում է: Բռնել ու բաց չի թողնում: Ուզեց գցել ուսի փայտը, երկու ձեռքով բռնել իր ոտքն ըռխած գազանի կոկորդն ու խեղդել, բայց հիշեց, որ ինքը փոքր է, փոքր է և ուսի փայտը, ու երևի գազանն էլ է մտածում, որ իրեն փոքրիկ տղա է պատահել, առաջին անգամ անտառ մտած տղա, չարժե ուտել նրան: Մտածում է, բայց բաց չի թողնում ոտքը:
Հարութիկը զգաց, որ քրտնում է: Իրեն այնպես թվաց, թե անգին ժամանակ է անցել, ուր որ է պապը կհասնի ու… Ականջը պահեց: Իր սրտի ձենն ինքն առաջին անգամ լսեց: Անտառում: Ձմռան օրով: Ու սիրտն ասում էր՝ տղամարդ ես, Հարություն, սրտով մնա, մի վախի: Քեզ թափ տուր: Պապդ դեռ հեռու է, էս մոտիկ տեղերքում ուրիշ մարդ էլ չկա: Ձեն էլ մի հանի: Գործ արա…
Հարութիկն ուզում է նայել ոտքի կողմը՝ չի կարողանում: Կամաց-կամաց սկըսեց նայել ու… իր աչքերի մեջ նայող գազանի աչք տեսավ: Ոտքը բռնել էր լարած թակարդը:
«Առանց իմանալու բանն ինչումն է, միանգամից վախենում ես, այ քո տունը շինվի, հա՞…»,— ինքն իր վրա նեղացավ Հարութիկը և տեղն ու տեղը նստեց: Հարկավոր է ձախ ոտքն ազատել թակարդից: Թակարդը լարելիս ինչի՞ հույս են ունեցել՝ նապաստակի՞, արջի՞…Էս ինչո՞ւ չի կարողանում բացել թակարդը: Թակարդի տերը կգա ու կտեսնի, որ ին-

քը Հարութիկ է բռնել:

***

Ինչ արեց, չարեց՝ չկարողացավ բացել թակարդը, որ ոտքն ազատի: Էս թակարդը, էս շղթան, էս էլ շղթայի կեռիկը՝ գցած-ամրացրած էս թփից: Կեռիկը հանեց: Էսպես ձեռքին պահած, փայտն էլ մի գցիր, ոտքը քաշ տալով հլա գնա, տեսնենք՝ ո՞նց ես գնում... Ու Հարութիկը ուզում է ինքը պապ դառնալ, թիկունքից տեսնել, թե թոռն ինչպիսի տանջանքներ հաղթահարելով է գնում իր ճամփան: Բերանը չորացել էր: Հենց առաջին առվի մոտ կռացավ, բռունցքով խփեց, ջարդեց սառույցը, մի երկու կում ջուր խմեց, սիրտը հանգստացավ:

Նստեց: Փորձեց հանել ծնկներին հասնող ռեզինե կոշիկը: Չկարողացավ: Չարժե պապին սպասել: Կարող է ուրիշ ճանապարհով գնա: Կարող է մինչև իրիկուն էլ ինքը նստի այս ճամփին ու մի անցորդ չպատահի: Հետո՞... Թակարդը կսեղմվի, արյունը... Ոտքը կծանրանա: Գիշեր կգա...

Եվ Հարութիկն սկսեց քայլել: Ոտքը ոչ քաշ է տալիս, ոչ տնգլի է տալիս: Ինքն էլ չի հասկանում, թե ո՞նց է առաջ շարժվում: Չորեքթաթ չի անում, չի սողում: Գնում է: Եվ չոր փայտը չի գցում: Եվ կեռիկը չի գցում: Ոտքն ու թակարդը լավ հարմարվել են իրար: Իրար հետ գալիս են: Ձյունոտ, տաք օր է: Իսկ թե փոթորիկ լիներ՝ բուքը ծածկեր աչքերդ, հետքերդ կորցներ, ճամփան փակեր՝ ի՞նչ կանեիր:

Առաջ՝ դեպի տուն է շարժվում Հարութիկն ու մտածում է պապի մասին: Նա հիմա մի ցցաչորի ծառ է ճարել, կտրում է, դասդասում, որ գնանք ձիով ու իշով բերենք: Այ, քամին որ ոռնում է, ծեծում դուռ ու լուսամուտ, դու վառարանի մոտ նստած տաքանում ես: Հիմա տատը մտածում է իր մասին: Հիմա Հայկանուշ քույրիկը մտածում է իր մասին:

***

Կաղին տալով հասել է գյուղի ծայրը, հակառակի պես մի մարդ էլ չի հանդիպում: Ցավն արդեն սրտին է հասնում: Մարդ չկա, չի երևում: Որ էդպես է, մինչև իրենց դուռը մարդ էլ պատահի, չի թողնելու, որ օգնեն: Ինքն ուզում է հիմա պատահի մի անցվոր, օգնի, որ իրար հետ հանեն ոտքը թակարդից, որ իր տատն ու իր Հայկանուշ քույրը, իրենց կատուն, շունը, կովը, ոչ մեկը չըտեսնի իրեն էս օրի:

Տեսնում են՝ թող տեսնեն: Փայտ է բերում: Էս թակարդն էլ ձեզ նվեր:

Դուրս ու ներս անող տատը տեսավ հեռվից.

— Պապդ ո՞ւր է,— հարցրեց, ապա նըկատեց, որ իր Հարութիկն իր նման չէ. մի պուճուր փայտը երեխայի քայլվածքը փոխել է տվել: Չէ՞, դա չէ... Ախչի, էհե՞յ, հասեք, էս ի՞նչ գեշ բան է եղել:

Հարութիկի սիրտը նաղի ձենից լցվեց: Հասան, փայտը ձեռից առան, թևերի տակն ընկան: Հարայ-հրոց ու աղմուկ արին՝ էս ո՞նց է եղել, որտե՞ղ է եղել: Վայ, կուրանամ՝ երկու ժամվա ճամփան էսպես ո՞նց ես կտրել-եկել: Հարութիկն զգաց, որ շատ դժվար գործ է արել՝ սկսեց լաց լինել...

Թակարդը հանեցին ոտքից: Տատն անիծեց.

— Տեսնես էս որ կուրացածն է տարել լարել:

Հարութիկի չորսկողմը պտտվում էին: Ոտքերն էին լվանում, շփում էին «գազանի» բերանի տեղերը: Ապա անկողնու մեջ պառկեցրին: Ցավը, հոգնությունը հաղթում էին: Աչքերն ուզում էր փակել, բայց վեր է թռչում, ուզում էր բան ասել՝ ծիծաղում էր: Մինչև քնեց:

Առավոտյան առաջին խոսքը, որ լսեց, սա էր.

— Էրեխիս բերած փայտով եմ կրակը վառել:

Տատի ձայնն էր: Նրա ձայնի նման դուր եկավ տան կրակը:

Պապը կռացավ, համբուրեց այտերը.

— Տղամարդ ես, ամեն ինչ էլ կպատահի: Բա՞, հանդը գնացողի հետ, անտառ գնացողի հետ միշտ էլ մի բան պատահում է: Ինչո՞ւ ես շեղվել ճամփից: Քեզ չասի՞ ճամփան բռնի ու գնա:

— Այտա, պապի, բա էդ յիքն անտառից դատարկ գայի՞: Ասի՝ գոնե մի ուսնակ փայտ բերեմ:

— Հա՛, ապրես, քո բերած փայտով է տունը տաքացել: Ը՞հը, թեյն էլ տաքանում է, հիմա մոռով, ամառվա քաղած քո մոռի մուրաբով մի լավ էլ թեյ կխըմենք ու...— Պապը հանկարծ նայեց Հարութիկին:— Երեկվա օրից մեզ ի՞նչ մընաց:

— Մի երկու լատան, մի իշաբեռ փայտ, մեկ էլ մի թակարդ, մեկ էլ...

— Մեկ էլ էն, որ մի օր կհիշես երեկվա մեր օրը...

ԿԱՐՈ ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ

# Աղջիկ-տղա

Աստղի վրա եթե այսպես
Նուրբ փետուրով իրար խառնես
Մի քիչ նազ ու հպարտություն,
Մի քիչ երազ՝ ծվեն-ծվեն,
Մի քիչ տզզոց, մի քիչ արցունք—
Այս աղջիկները կստացվեն:

Աստղի վրա եթե այսպես
Նուրբ փետուրով իրար խառնես
Մի քիչ կամք ու համառություն,
Որոնք սարերը սասանեն,
Մի քիչ սեր, ուժ ու... կոշտություն—
Այս տղաները կստացվեն:

Այ ինչու են՝ աղջիկ-տղա,
Եթե նույնիսկ խռով մնում—
Իրենց ծնված հողի վրա
Միշտ նույն աստղի կողմը նայում:

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



ՍԵՐՈ ԽԱՆԶԱԴՅԱՆ

# Տափիս խրափը

Նկարը՝ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Հենց որ գարունը բացվում էր, տատս մեզ՝ փոքրերիս, տանում էր ձորերն ու սարերը՝ թթու դնելու բույսեր հավաքելու:

Հենց որ ձյունը հեռանում է լեռան արեգունի լանջերից, հողից գլուխը հանում է խնջլոզի սոխուկը: Սպիտակ արմատաբույս է, որ երբ եփում ենք, ուտելիս մատներս էլ ենք հետը կուլ տալիս: Ամբողջ օրը կուշտ է պահում:

Մայիսին հյութալի զոխ է գցում սպիտակ բոխին: Մենք դա քաղում, պարկերով բերում էինք տուն: Տատս բոխին կարասների մեջ աղ էր դնում, և ողջ ձմեռը մենք դա պանիրհացով ուտում էինք: Սարի ավելուկ էինք քաղում: Սրա չորացրածն անընման կերակուր էր: Ձմեռը տատս դա եփում էր ձավարով, հոնի մաղաշարով, ձեթով բովում, ու մեզ թվում էր, թե գառան փլավ ենք ուտում: Անտառներից շուշան, գառանդմակ, կեռմզան էինք հավաքում, աղ դնում: Բոստաններից քեղ, փիփերթ ու կանաչ ձներբուկ էինք հավաքում, գետեզերքից՝ ջրիկոտեմ ու դաղձ, չորացնում, պահում: Աշնանը մեր էշն առաջներս էինք անում, գնում անտառ: Հոն ու զկեռ հավաքում, կողովներով վայրի տանձ, մասուր, մոշ, ձորախորքերից՝ վայրի նուռ ու ալոճ, ժայռաճեղքերից՝ սեզ ու ասպառ: Դրանք տատս չիր էր անում, աղցան կամ թթու դնում կարասների մեջ, շարում մեր քարայր-մառանում:

— Ամառվա փուշը ձմեռվա նուշ է,—ասում էր տատս:— Էն մի եղունգ մտիտեղն ու ճնճղապաշարն էլ ապրուստ է, հավաքեցեք, բերեք:

Այդպես էլ անում էինք:

Մենք մի հարևան ունեինք՝ Հերիք բիբին: Սա երկու արդեն կարգին մեծացած աղջիկ ուներ: Շատ աղքատ էին: Մեկ էլ տեսար ձմեռը Հերիք բիբիի աղջիկներից մեկը մի գդալ ձեռքին մտավ մեր տուն:

— Ազի,— ասում էր տատիս:— Մաման ասալ ա մի գդալ յուղ տաս, շորվա անենք:

Տատս մեկի փոխարեն երեք գդալ յուղ էր տալիս նրան։
Մի այլ անգամ.
— Ազի, մաման ասալ ա մի կտոր շաքար տաս։
Տատս նրան երեք կտոր շաքար էր տալիս, մեզ ասում.
— Հիշեցեք, հա, աղքատին մղակից ետ չեն տալ։ Փառք աստծու, մենք կով ու ոչխար ունենք, էդ խեղճերը չունեն։ Որ յուղ, պանիր կամ ձեթ ուզեն, կտաք, չխընայեք։
Մի գարնան տատս հարևանին կանչեց, թե աղջիկներին վերցրու, գնանք սար, բոխի ու ավելուկ բերենք՝ ձմեռվա պաշար։
Հերիք բիբին, որ կանգնած էր իրենց տան կտրին, ուսերը ձգմգեց։
— Չէ, ազի, կարող չեմ գալ, մեջքս ցավում ա...
Ու չեկավ։ Ինքը չեկավ, բայց ձմեռը եկավ։ Մի երեկո Հերիք բիբու աղջիկը մըտավ մեր տուն։
— Ազի, մաման ասալ ա մի ծամ ավելուկ տաս։
— Լավ,— ասաց տատս,— գնա մորդ ուղարկիր, թող գա տանի։
Հերիք բիբին եկավ։ Տատս ձեռքերը կանթեց կողքերին։
— Սիրտդ ավելուկ ա ուզում, հա՞, Հերիք հարսի։ Ամռանը, որ ասացի՝ եկ, գընանք, ավելուկ քաղենք, ինչո՞ւ չեկար։ Հիմա ոնց որ եկել ես, էնպես էլ կորի աչքիցս, անկյալ անբանի մեկը... Դո՜ւրս...
Հերիք բիբին սարսափած փախավ։ Տատըս երկար բորբոքվեց։ Երբ մեզ պառկեցնում էր քնելու, ասաց.
— Մենք ունոր ենք։ Ունորը պետք է չունորին օգնի, աստծու սահմանածն է։ Բայց օգնի՝ յուղ տալով, շաքար տալով, հաց տալով, տրեխացու կաշի տալով, գուլպայի բուրդ տալով, ոչ թե օգնի ավելուկով, բոխիով, որ չունորության բան չի, դրանցից մեր սարերն ու ձորերը լիքն էն, թող գնան, հավաքեն։ Թամբալ են, ծույլ են, անկյալ են։ Թող ձմռանը գնան բանջար քաղեն, հավաքեն, բերեն տունը լցնեն, որ ձմռանը զխկտվեն, էլի՜...
Առավոտյան կրկնեց նույնը։
— Ինձնից ձեզ խրատ՝ աղքատը որ մեղր էլ ուզի, տվեք։ Իսկ էն բաները, որ սար ու ձորում լիքն են և ինքը չունի, չըտաք։
Այս խրատը մինչև օրս չեմ մոռացել։ Լավ կլինի, որ ոչ ոք չմոռանա։ Օգտակար խրատ է։



# Հայաստան

*(շարադրության մրցույթի)*

Հավատում եմ քեզ, իմ հայ ժողովուրդ,
Քեզ, որ լեռներում այս բարձրիկ ու լուրթ,
Ապրել ես դարեր, դարեր մաքառել
Եվ քո կրակը միշտ վառ ես պահել:

... Ցեղեր են եկել, արշավել ցեղեր,
Քո արդար ու հին արյունն են հեղել,
Ասպատակել են ու ջարդել են քեզ,
Դարեր ու դարեր աղարտել են քեզ,
Բայց դու Նարեկով ինքդ քեզ գտել,
Քո սուրբ հարության հրաշքը գտել...

Հայաստան աշխարհ. ով կարող է ասել, թե երբ առաջին անգամ քարը քարին դրվեց այս հինավուրց լեռնաշխարհում: Ու հենց այդ օրվանից կառուցելն ու ստեղծելը ճակատագրի նման ուղեկցեցին հային: Շինարար վարպետները, լեռնաշխարհի քար ու ժայռից հրաշք կոթողներ էին կանգնեցնում, տաճարներ ու պալատներ, գեղեցիկ ոստաններ ու բերդեր, կամուրջներ ու ջրանցքներ կերտում: Եվ բարձրանում էին հրաշք քաղաքները ու կենդանությամբ լցնում Հայաստան աշխարհը:

Խաղաղ աշխատանք է սիրել հայը, բայց հաճախ են նրա խաղաղությունը խեղդել արյան ծովի մեջ: Դարեր շարունակ հայը «խաղաղություն ամենեցուն» է աղոթել: Նա արևածագի նման միշտ արևին է դարձրել դեմքը, և միայն սրով չէ, որ պաշտպանվել է: Սրից զորավոր զենք էր հարկավոր փրկելու համար հողի նման բարի, իմաստուն ու համբերատար, հողի նման արգասավոր ու խաղաղասեր հայ ժողովրդին ու նրա ոստանը՝ Հայոց աշխարհը: Այնժամ ժողովուրդը իր ծոցից հանեց Մեսրոպ Մաշտոցին, որն էլ գրտավ այն վահանը, որի վրա փշրվեցին հայ աշխարհը ասպատակող բիրտ բռնակալների սրերը: Այդ հրաշք վահանը հայոց գրերն էին, հայոց լեզուն: Բայց դրանից հետո էլ չչորացան հայ մայրերի աչքերը. Ավարայր տեսած հայերը ընտիպված էին Սարդարապատ տեսնել և մեծ եղեռն: Բայց նորից հայ ազգը չջնջվեց աշխարհի երեսից: Տերյանը չըդարձավ Նաիրյան աշխարհի վերջին պոետը, շարունակվեց հայոց երգը: Բացվեց մեծն Թումանյանի կանխատեսած պայծառ առավոտը: Հոկտեմբերը սկիզբ դրեց հայոց նոր պատմությանը: Եվ լեգենդը շարունակվեց:

Երիցս կեցցես դու, հող հայկական, օրրան տաղանդների ու մեծագործությունների, դու տվել ես Հովհ. Թումանյան, Վիլյամ Սարոյան, Հովհաննես Բաղրամյան, Հովհաննես Այվազովսկի, Արամ Խաչատրյան, Ստեփան Շահումյան, Ավետիք Իսահակյան, Կոմիտաս, Մարտիրոս Սարյան, Գայ, Ազնաուր, Միկոյան, Օրբելի եղբայրներ: Ես տեսել եմ Երևանը, Գառնին, Սևանը, Զվարթնոցը և հպարտ եմ, որ քո զավակն եմ, իմ մայր ժողովուրդ, իմ Հայաստան.

Գիտեմ, այս դարի հողմերում վրդով
Դարերից բերած խորին խորհրդով
Քեզ պիտի նորից Նարեկով գտես,
Խաչքարիդ ազնիվ լույսով մկրտես,
Ջրդեղես պիտի չարենցյան հրով
Ու քո վաստակով, քո կոթողներով,
Քո Մատյաններով, սիրո տաղերով,
Քո մաքուր գինով, քո արդար հացով,
Հարատևության քո առեղծվածով
Հավերժես պիտի լեռներում այս լուրթ,
Հավատում եմ քեզ, իմ հայ ժողովուրդ:

**ԱՐՄԵՆ ՆԱԶԱՐՅԱՆ**
**Երևանի № 102 միջնակարգ դպրոց.**
**10-րդ դաս.**

**ԳԱՅԱՆԵ ԳԱԼՍՏՅԱՆ, 12 տ.**
**Էջմիածին**
**«Նատյուրմորտ»**

**ԱՐՄԵՆ ՄԱՐԳԱՐՅԱՆ, 14 տ. Երևան**
**«Երազանք»**



# Գթառատ աշուն

Գալիս ես բերքով, մրգերով հասուն,
Ծպիտով կայտառ, գույներով նախշուն,
Ոսկեշող աշուն:
Բայց՝ գնում տխուր, պատռած շորերով,
Արցունքն աչքերիդ, և դողդողալով,
Ծեր, թափառական քամուց հալածված՝
Փախչում, թաքնվում խոր քարափներում,
Ամպերից այն կողմ կամ տաք հարավում:
Եվ թաքստոցից նայում ես մարդկանց.
Տեսնում ես նրանց՝
Թե ո՞նց են կռվում դաժան ձմռան հետ,
Տքնում, չարչարվում գարնանն անդադրում,
Ամռան շոգերին ծով քրտինք թափում,
Նայում ես մարդկանց ու նրանց խղճում.—
Այգի, դաշտ, անտառ բերքով ես լցնում,
Գթառատ աշուն:

ԲԵՆԻԱՄԻՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Երևան, № 33 դպրոց, 3-րդ դաս.

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ • ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ











## ՊԻՈՆԵՐ—ԴՊՐՈՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

# Արվեստների դպրոց

Լուսանկարները՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

Երևանի Պռոշյանի անվան № 15 դըպրոցը գեղագիտական թեքում ունի: Իբրև այդպիսին առաջինն է հանրապետությունում: Դպրոցի ինքնատիպությունն արտահայտված է սաների, նույնիսկ առաջին դասարանցիների աչքերում:

Շաբաթվա առաջին երեք օրերին, ժամը 3-ին մոտ, մեծ եռուզեռ է դպրոցի միջանցքներում՝ ծնողներ, հյուրեր՝ այլ դպրոցներից: Փոքրիկները սովորած երգերը վերհիշելու փորձեր են անում: Բոլորը սպասում են Վահրամ Հովակիմյանին՝ ազգագրության ուսուցչին: Ազգա-

գրության դասի նկատմամբ հետաքրքրությունը շատ-շատ մեծ է: Երեխաները հափշտակությամբ են լսում մատչելի պատմություններ, հնագույն առասպելներ, դրվագներ հայկական էպոսից, ժողովրդական առածներ, ասացվածքներ ու հանելուկներ: Երբ հերթը հասնում է ժողովրդական երգերին, աշխուժությունն ավելի է մեծանում: Փոքրուց նրանք վարժվում են ժողովրդական դարձվածքներին, դիմելու հնուց ընդունված ձևերին: Դասարանում տառաճանաչությունն սկսվում է տառերի նկարչական ձևավորմամբ: Յուրաքանչյուր տառի դիմաց սովորում են ժողովրդական երգեր, խաղիկներ կամ առածներ: Մատչելի եղանակով նրանց ներկայացվում է այբուբենի ստեղծման պատմությունն ու նրա նշանակությունը: Ուսման և ընթերցանության նկատմամբ հետաքրքրությունը ավելի է մեծանում, հոգևոր պահանջ դառնում՝ մեսրոպյան այբուբենի այս ինքնատիպ յուրացման շնորհիվ: Վահրամ Հովակիմյանը ծրագիրն այնպես է կազմել, որ այն նպաստում է մյուս առարկաների դյուրամարսությանը:

Ազգագրության դասեր են ունենում բոլոր առաջին դասարաններում: Իսկ մյուս տասը խմբակներում տարբեր դասարաններից աշակերտներ են ընդգրկված՝ ըստ ընդունակությունների: Բոլոր խմբակներում էլ դասավանդում են գեղագիտական դաստիարակության կենտրոնից եկած լավագույն մասնագետներ: Դասերից հետո դպրոցի միջանցքներում լսվում են երաժշտական տարբեր գործիքների ձայներ: Տարբեր դասասենյակներում տարբեր դասեր են ընթանում. դաշնամուրի, նկարչության, քանդակագործության, գեղանկարչության ու ժողովրդական երգերի, պարի, ասեղնագործության և ասմունքի: Աշակերտներից շատերը միաժամանակ մի քանի խմբակներում են սովորում: Արդեն նկատելի հաջողության են հասել գեղանկարչության ու ժողովրդական երգերի կատարման մեջ:

Խմբակներից յուրաքանչյուրն իրեն հատուկ միջոցներով մերձեցնում է սաներին անցյալի ու ներկայի հոգևոր մշակույթին և անգնահատելի դեր խաղում երեխայի անհատականության ձևավորման գործում: Այդ նպատակի համար հավաքագրված են գործին իսկապես արժանի մանկավարժներ:

ԱԼԵՔՍԱՆ ԿՈՒԼԱԽՍԶՅԱՆ



## ԶՐՈՒՅՑՆԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ՏԱՍՆՀԻՆԳԵՐՈՐԴ

# Արա Առաջինը և Մեծ Հայքի միավորումը

Մովսես Խորենացին գրել է **Արա** անունով երկու թագավորների մասին: Սեպագրերում էլ **Արգիշտի** անունով երկու թագավորներ են հիշվում: Խորենացու Արա Առաջինը (Գեղեցիկ) հզոր թագավոր է եղել, հայ ժողովուրդն էլ նրան միշտ հիշել է, թեև առասպելական ձևերով: Սեպագրերից իմանում ենք, որ Արգիշտի (կամ Արգիշտե) Առաջինն էլ շատ հզոր է եղել՝ Արարատի հայոց պետության թագավորներից ամենահզորը:

**Արա** անվան արմատն է **Ար**-ը, **ա**-ն հայոց հին հոլովական վերջավորություն է: Արգիշտի անվան արմատն էլ **Ար**-ն է, **գիշտ**-ը ածանց է, **ի**-ն (կամ **ե**-ն)՝ վերջավորություն: Իսկ այդ **Ար** արմատը բնիկ հայերեն **այր** բառից է ծագել: Այր, ինչպես գիտենք, նշանակել է ուժեղ, տղամարդ, արի: Հիշենք, որ

այր բառից է գոյացել նաև **Այրարատ**, ապա՝ **Արարատ** անունը: Եվ այսպես, **Արգիշտի**-ն **Արա** անվան այլաձևությունն է, երևի նոր-խուռիերենի ազդեցությամբ գոյացած:

Նորից հիշենք, որ Խորենացին ապրել է 5-րդ դարում, այսինքն՝ Արա-Արգիշտի թագավորից շուրջ 1200 տարի հետո: Այդ հարյուրամյակների ընթացքում եղած դեպքերի մասին շատ են պատմել, զրույցները բերնեբերան անցնելով Մար Աբասին և Խորենացուն դարձյալ հասել են փոփոխված, և ահա Արա II-ը դարձել է Արա I-ի որդին, թեև իրականում, ըստ սեպագրերի, նրա ծոռն է (թոռան որդին):

Հավատալով, որ ժողովրդի և Խորենացու հաղորդածների մեջ դարձյալ կա եղած դեպքերի արձագանք, այդ դեպքերի ժամանակ գրված սեպագրերի օգնությամբ ամենը ճըշտելով, այժմ գիտենք, որ Արա I-ը թագավորել է մ. թ. ա. 786—764 թվականներին, իսկ Շամիրամը ապրել է ամենաշատը մինչև մ. թ. ա. 782 թվականը: Գուցե իր կյանքի վերջում ծերացած Շամիրամը իր որդու՝ Ադադներարի III-ի զորքերի հետ կրկին եկած լինի Հայք, և Արա I-ը գուցե պատերազմած լինի նրանց դեմ: Այս մասին սեպագրերը ոչինչ չեն ասում, բայց ասում են, որ Արա I-ը առհասարակ շատ պատերազմներ է մղել Ասորեստանի դեմ:

Արայի զորքերի դեմ պատերազմել է Ասորեստանի հզոր տուրտանը՝ նրանց սպարապետը, որի անունը եղել է Շամշիլու: Գուցե ժողովրդի հիշողության մեջ նաև Շամշիլու և Շամիրամ անունները են նույնացվել, և ըստ ժողովրդական զրույցի, Արան Շամիրամի դեմ է պատերազմել:

Արա Առաջին Գեղեցիկը, իրոք, շատ սիրելի է եղել հայ ժողովրդին, նա Արարատի թագավորության ժամանակաշրջանի ամենասիրելի թագավորն է եղել: Դա իմացվում է նաև նրանից, որ Մեծ Հայքում կան սարեր, դաշտեր, քաղաքներ, որոնք հնուց ի վեր կոչվում են Արայի անունով: Օրինակ, հիշենք՝ Արագած լեռը, որ նախապես կոչվել է Արագահ (Արայի գահ), կամ Արայի լեռը (Արագածի մոտ), Արզնին (Արան զնի), Արայի անունով է կոչվում հայոց հին տոմարի 6-րդ ամիսը և այլն: Հետաքրքրական է, որ Հայքում Շամիրամի անունով էլ վայրեր կան. բացի Շամիրամի առվից, կան գյուղեր **Շամիրամ** անունով, մեկը Արագածի լանջին է, մյուսը՝ Վանա լճից հյուսիս, կա նաև Շամիրամի լեռ և այլն: Ժողովուրդը իր սիրելի թագավորին հակադրել է հակառակորդ Ասորեստանը խորհրդանշող Շամիրամին՝ իր հիշողության մեջ պահպանելով նաև այն իրողությունը, որ Շամիրամը եղել է Հայքում և մի ինչ-որ ժամանակ այստեղ նաև լավ գործեր արել:

Արա I-ը միավորելով գրեթե բոլոր հայկական անջատ իշխանությունները՝ առաջին անգամ ստեղծեց Մեծ Հայքի ամբողջական թագավորությունը՝ մոտ 300 հազար քառակուսի կիլոմետր տարածքով: Այս պատճառով է, որ նա միշտ մնաց հայ ժողովրդի հիշողության մեջ և նույնիսկ աստվածացվեց, ինչպես Հայկը և Արամը:

Արան իր զորքերով եղավ Մեծ Հայքի այն շրջաններում, որոնք նրա հայրը՝ Մենուան, միավորել էր Արարատի թագավորության մեջ: Շիրակով նա հասավ մինչև Տայք, հետո գնաց հարավ-արևելք, Ուրմիո լճի մոտակայքի հայկական շրջանները՝ Շատիրական: Եղավ անհանգիստ Ծոփքում, ապա Ուրմե (Արմե) և Շուբրիա կոչված գավառներում, որ Սասունն էր: Ամենուրեք ամրապընդեց Արարատի թագավորության իշխանությունը: Արան էլ էր դաժան վարվում այն հայ իշխանների ու կառավարիչների հետ, որոնք փորձում էին դուրս գալ հայոց կենտրոնական պետության կազմից կամ դաշնակցում էին հակառակորդի հետ:

Տեղական հայ առաջնորդներին հնազանդեցնելու նպատակով Արա I-ը հայ բնակչության տեղափոխություններ էր անում՝ Մեծ Հայքի մի մասից՝ մյուսը: Մի տեղ Արան գըրել է. «Հայկ աստծու հրամանով Արան, Մենուայի որդին, ասում է. «Ես կառուցեցի Էրեվան քաղաքը, Վանա երկրի հզորության և անհնազանդ երկրամասին սաստելու համար: Այստեղ ես մի հզոր գործ կատարեցի՝ Խաթե և Ծոփք երկրամասերից վեց հազար վեց հարյուր մարտիկներ բերեցի ու այստեղ բընակեցրի»: Այսպես, թագավորը հնազանդեցրել է հայոց Ծոփքը և միաժամանակ մարդաշատ դարձրել Էրևանն իր շրջակայքով:

Արա I-ի գործերի մասին մանրամասն պատմում է թագավորի թողած մեծ արձանագրությունը, որը փորագրված է Վանի մոտ գտնվող Խորխոռյան ժայռին:

Հիշատակված են նվաճված կամ Արարատի թագավորությանը վերամիավորված Մեծ Հայքի շատ երկրների ու քաղաքների անուններ, որոնց մի մասն այժմ անծանոթ է, քանի որ ժամանակի ընթացքում շատ բնակավայրեր վերացել են, շատերի անունն է փոխվել կամ հայերեն անունը այլակերպված է նորխուռիերեն արձանագրությունների մեջ: Հիշված անուններից այսօր ծանոթ են, օրինակ, Տարիունին, որ Բասենի Դարյունքն է, Գառ-

նիանին, որ Գառնին է, Ծատիրագանին, որ Ծատիրավանն է (Ուրմիո լճի արևմտյան ափին), Աբիլիանին, որ հայոց Աբեղյանք գավառն է, Էրեբունին, որ Էրևանն է կամ Երևանը, Տուարածինին Տավարածն է (Վանա լճից արևմուտք), Դիաուեխին, որ Տայքն է և այլն: Էրեբունի—Էրևան բերդաքաղաքը Արան կառուցել է մ. թ. ա. 782 թվականին: Այժմյան Երևան անունը 5-րդ դարում հնչել է Էրևան, ավելի վաղ՝ Էրեբան: Այն կազմված է բնիկ հայերեն **երեւ** (հնում՝ **էրեբ**) արմատից, որ նշանակում է երևալ, տեսնվել: **Էրեբունի** կամ **Էրևան** նշանակել է երևացող: Իրոք, բերդը բարձր բլուրի վրա է, շրջակայքից երևացող: Արան մ. թ. ա. 776 թ. Արաքս գետի ափին կառուցեց իր անունը կրող մի քաղաք, որը արձանագրություններում կոչվում է Արգիշտիխինիլի, իսկ ժողովուրդը կոչել է Արա-մայր: Այդ քաղաքը հետո հայտնի էր Արմավիր անունով: Արա I-ը Արա-մայրը դարձրեց վարչական կենտրոն՝ որպեսզի այդտեղից հսկի Արարատյան դաշտի և շրջակա գավառների վրա: Դա Արարատի թագավորության մայրաքաղաքն էր Վան-Տոսպի հետ և ապագայում պետք է դառնար գլխավոր մայրաքաղաք:

Արան իր թագավորության մեջ հաստատեց նաև Մեծ Հայքի արևելյան շրջանները: Օրինակ, Մենուայի ժամանակ Արցախը (Ղարաբաղը) գտնվում էր Ասորեստանի թագավոր Ադադներարի III-ի իշխանության տակ: Նա այդտեղ իր պալատն ուներ: Արայի օրոք այդ շրջանը միավորվել էր Արարատի թագավորությանը: Իր դիրքերը Մեծ Հայքի Արևելյան կողմերում հաստատ պահելու համար Արա I-ը պատերազմներ վարեց Ծատիրավանում, ապա՝ Մեծ Հայքից հարավ-արևելք ընկած պետությունների դեմ:

Մ. թ. ա. 781-ից սկսած Արա I-ը շուրջ 5—6 տարի անեղ պատերազմներ էր մղում Ասորեստանի դեմ: «Հայկ աստծո մեծությամբ եւ արշավի ելա և ես շպրտեցի Ասորեստանին»,— գրել է Արա I-ը: Մի այլ տեղ՝ «Արան՝ Մենուայի որդին ասում է. Հայկը հզոր է, Հայկ աստծու զենքը հզոր է, Հայկ աստծու մեծությամբ եւ արշավի ուղարկեցի, ես շպրտեցի Ասորեստանին իմ երկրից»: Իմ երկիր ասելով Արան հասկանում էր Մեծ Հայքը:

Արա I-ը արձանագրություններում իրեն բնորոշել է այսպես. «Մենուայի որդի Արան՝ հզոր թագավորը, մեծ թագավորը, Վանա երկրի թագավորը, Տոսպի տիրակալը»: Արայից սարսափում էին Ասորեստանում: Ասորեստանի վերոհիշյալ Ծամշիլու սպարապետը գրել է. «Հայ Արան, որի անունը սարսափելի է, ինչպես ծանր փոթորիկը, որի հզորությունը լայնարձակ է, որին նախկին թագավորներից ոչ մեկը չի հասնի»:

Արա I-ի ժամանակ Սյունիքն էլ էր մըտնում Արարատի թագավորության մեջ: Տարիներ հետո Սյունիքում տեղի իշխանները փորձել էին անջատվել, և նրանց ապստամբությունը ճնշել է Արա I-ի թոռը, Արա II-ը: Դա իմանում ենք վերջերս Սիսիանում գտնըված սեպագիր արձանագրությունից: Ուտիքը, Փայտակարանը մինչև Կասպից ծով նույնպես գտնվել են Արարատի թագավորության կազմում: Արայից մոտ 90 տարի հետո հայոց



*Արա Առաջինի սաղավարտը։*

Ռուշա II-ը այդ երկրամասերում, մինչև Կասպից ծով, կարգ էր հաստատում: Արան նվաճեց նաև մի քանի շրջակա երկրներ՝ Հյուսիսային Միջագետքը, Ասորիքը, Մանան և այլն:

Արա I-ի 22 տարվա թագավորության օրոք Արարատի հայոց թագավորությունը դարձավ Հարավ-արևմտյան Ասիայի ամենահզոր երկիրը: Այդքան մեծ ու զորեղ Հայքը երբևէ չէր եղել: Եվ մեկ էլ այդպես հզորանալու էր Արտաշեսի և Տիգրան Մեծի ժամանակներում:

(շարունակելի)



ՎԱՐՈՒԺԱՆ ԱՅՎԱԶՅԱՆ

# Ամառն անց կացավ, հոտն իջնում է տուն

Լուսանկարը՝ ԳԱԳԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

Ախ, պայծառ չէին սարերը բարձրիկ. և ամպ չէր փայլում՝ սպիտակ գառնուկ: Ախ, լուռ է իջնում առվակը ուրախ, և սարալանջըն ի վար ծիածանները չէին վետվետում: Ախ, ծաղիկների ծփանքն էր անցել, և թերթիկներն են թափառում մենակ: Ախ, խոտերի մեջ գույները հանգել, և բզեզներն են լըռել կամացուկ: Ախ, ջինջ ցողերի ցոլքերը մարել, և հավքերի կանչն է թպրտում ցածրիկ:

Եվ անտես անցավ առավոտի ծփանքը ցնծուն ու բաց, անտես անցավ արեգակի գունզգունիկ ճոճքը ցողերի վրա, ու լուռ թըրթըռաց, պայծառ չհնչեց, ախ, կարմիր պահը գիլ-զվարթ երգի: Եվ նաև պահն անցավ այն

հանրահայտնիկ, երբ ջրիկն ուրախ առվակն էր զնգում, խոտերի լանջին հովն էր սվսվում, և ջրերի ցոլքից սարալանջն ի վար ուլունքների պես ծիածաններ էին հյուսվում ու շարվում։ Ծիածաններին խառնվելու գալիս, ըսպիտակ փայլում ու զվարթ զնգում՝ հոտն էր երկարում, և առավոտի ցողերը վերջին թեթև թրթիռով խաղաղ իջնում էին նրանց լանջերին։

— Առավոտ պայծառ, զվարթ ծիրանի, ինչո՞ւ չես փայլում մեր թերթիկներին,— խըշխըշ խշշյունով ու խոր մոլորված հարցնում էին մեղմիկ մերկ ծաղիկները արևելյան փակ երկնքին լռակյաց։

— Ախ, մի՞թե մեզ մոռացել է նա,— կանչում էին արտույտները ու ճնճղուկները, բայց նրանց ձայնը այլևս չէր հասնում մյուսներին։

Անշարժ ու թաց օդի մեջ նրանք միայն իրենք էին լսում իրենց ձայնը և չգիտեին, որ ուրիշ ոչ ոք չի լսում,որովհետև դա վերջապես այն ժամանակն էր, երբ պիտի ամեն մեկը ինքն իրեն լսեր, որպեսզի իմանար, թե ամեն առավոտ ինչ է ասում մյուսներին։

— Երևի դեռ չի՞ լուսացել,— հարցնում էին արդեն թռչել սովորած փոքրիկները, որովհետև նրանք միշտ ուշ էին արթնանում և չգիտեին, թե երբ է առավոտի ժամանակը։

— Իհարկե, լուսացել է,— իրենց հին իմաստության մեջ խոր լռելով ծանր ասում էին արծիվները։— Ահա՝ մենք իրար տեսնում ենք, ուրեմն՝ լուսացել է, երկինքը մութ չէ, ուրեմն՝ լուսացել է։

— Դեռ սպասենք, դեռ սպասենք,— մըրմընջում էին հնձած խոտերի կարճ ցողունները և ձգում փոքրիկ ճյուղերը։

— Սարերով ու դաշտերով, Սպիտակափառ լեռներով Ես անցնում եմ ու ասում Ամեն մեկիդ խաղաղ քուն,— հանկարծ բոլորին լսելի երգ հնչեց հեռվից՝ սարի կատարից, և բոլորը լռեցին ու սպասեցին դանդաղ։

— Աշնան քամին է,— ասաց սարալանջի ամենամեծ արծիվը։— Ես նրան ճանաչում եմ, որովհետև մենք առաջ ընկերներ էինք։ Նա քնում է գագաթի ձյուների հետ, իսկ ցերեկները բարձրանում ամպերից վեր, որտեղ ես չեմ կարողանում հասնել։

— Եկավ, եկավ, ա՛խ, եկավ,— ասացին չորացած ծաղիկները և սերմերով ծանրացած գլուխները ցած խոնարհելով չոր խշխշացին։

— Եկա՛վ, եկա՛վ, հա՛յ, եկա՛վ,— ասացին արդեն թռչել սովորած փոքրիկները և սըրթսըրթալով իրար մոտեցրին փետուրները։

— Եկավ, եկավ ու եկավ,— ասացին կաքավները և իջան փոքրիկ առվակի լուռ ձորակը։

Սվսվալով ու շվշվացնելով եկավ, նրանց հասավ ձյունոտ կատարից իջած աշնան քամին և իր դեղին գույնը զարկեց բարձրիկ սարի լանջաքաց կրծքին։

— Ամառն անց կացավ, հոտն իջնում է տուն,— ասաց դեղին քամին, և թևերից ըսպիտակ, փափուկ ու սառը փաթիլներ պոկվեցին և ցրվեցին հնձած խոտի կարճ ցողունների, թռչունների ու ծաղիկների վրա։

— Ի՞նչ լուր բերիր ձյուներից,— ասաց ծեր արծիվը։— Մեզ չի՞ սառեցնի ցուրտը հին։

— Ձյունը՝ փափուկ ու փափուկ,— ասաց աշնան դեղին քամին,— պիտի փափուկ գըրկի ձեզ, որ չսառեցնի ցուրտը հին։

— Ի՞նչ է ասում քեզ քամին,— ծեր արծվին հարցրին մյուսները, որովհետև արծիվն ու աշնան քամին խոսում էին աշնան լեզվով, իսկ աշնան լեզուն հասկանում են նըրանք, ովքեր աշուն են տեսել։

— Ասում է՝ քուն ու հեքիաթ եմ բերել ձեզ,— ասաց ծեր արծիվը խոտերին, ծաղիկներին ու սերմերին։

— Ասում է՝ ձեզ համար էլ տաներքներին սիրուն բներ եմ գտել,— ասաց ճնճղուկներին, արտույտներին, հավքերին։

— Ասում է՝ իսկ քեզ համար, փոքրիկ առվակ, սառցե տնակ կշինենք, ձյունե տանիք կքաշենք։

Եվ ծաղիկների ցողունների մեջ փակ խըլըրտացին վճիտ ցողերը թեթև-թրթռուն, ու կարմիր-կանաչ առավոտ ծիփաց։ Եվ լուռ կանչեցին անտուն հավքերին խաղաղ բները կարմիր տանիքներից, ու կարմիր-կանաչ ծաղիկը ծիփաց։ Եվ ձորակների քարերը կլոր ջրերից ուրախ մեկ էլ մաշվեցին ու գլորեցին փոքրիկ առվակին, ու կարմիր-կանաչ ծիածան ծիփաց։

— Իսկ ո՞ւր է արեգակը,— արդեն աշնան ցածրիկ լեզվով մեկիկ-մեկիկ դարձան քամուն կարճ խոտերը ու սերմերը, ծաղիկները ու հավքերը ու առվակը ու գույները ամառնական։

Աշնան դեղին, նիհար քամին հետը ամպ էր բերել մութ ու ամպի հետ՝ լռություն։ Լռությունը ետ քաշեց, ամպի մութը ետ քաշեց։ Երկինքը բացվեց կապույտ ու արագ, և լուսափայլեց սարը լանջաքաց։ Բա՞րձր-բարձրերից մշուշի գույնով քունը երեսին իջավ արեգակը՝ փայլուն խնձոր ծառի ծերին։ Բայց բարակ էր ճառագայթը, խաղաղիկ էր զրնգոցը, կարմիր դեմքը՝ փափուկ-փափուկ ծիռուն արտ։

— Նրան ես եմ ուղարկել,— ցած շշնջաց արեգակը մեղմորիկ։— Որ ձեզ օրոր ասի քաղցրիկ ու քուն բերի մարմանդ-մարմանդ ու երազներ չալպուտորիկ։ Իսկ ես կգամ

երբ կարթնանաք երգ ասելու, բույրեր տալու ու ձեր քունը ինձ պատմելու:

Հե՜յ, զրնգաց փոքրիկ առվակը, և ջրիկն ուրախ վազեց առաջ: Հե՜յ, գլուխը բարձրացրեց խոնարհ զանգակածաղիկը, և բույրիկը վերջին թրթռաց շուրջը: Հե՜յ, թևին տըվեց արտույտը չալտիկ, և ձայնիկը զըվարթ երգեց առույգ: Հե՜յ, երերաց հնձած խոտի ճյուղը բարակ, և գույնիկը կանաչ ցոլաց հավաքը:

— Բարձրիկ սարին իջած արև,— կանչեցին արդեն թռչել իմացող փոքրիկները:

— Ծիածան տուր, կարմիր արև,— խայտաց-ջրիկը վեր ցայտեցրեց առվակն ուրախ:

— Ծաղիկ տուր ինձ, արև պայծառ,—վերջին դեղին թերթիկը փայլեցրեց զանգակածաղիկը խաղաղ:

— Երգիկ տուր ինձ, արև զվարթ,— ճըռճըռաց չալտիկ արտույտը:

— Ինձ վեր ձգի, ինձ հետդ տար, արև կանաչ,— խոնարհ մեջքը բարձրացրեց հնձած խոտի ճյուղը բարակ:

— Մնաք բարով,— ժպտաց արեգակը,— մնաք բարով, իմ բալիկներ սիրուն, ամառն անց կացավ, պիտի գնանք տուն:

— Մնաք բարով դուք, արոտներ սիրուն, ամառն անց կացավ՝ հոտն իջնում է տուն,— ցածրերի բաց դաշտերից, որտեղից ամբողջովին էր երևում բարձրիկ սարը լանջաբաց, զիլ կանչեց հովիվ ախպերը հոգնած, և դեղին քամին աշնան լուռ խաղաղության չափը տվեց նրա արտին:

Եվ սվսվաց ու շվշվացրեց դեղին քամին, թափահարեց լայն թևերն ու հովիտների վրա հավաքեց իրենց սերմերը, որովհետև յուրաքանչյուր հովիտ ունի իր առանձին գույները, և երբ մյուս գարունքին սերմերը կդառնան ծաղիկ կամ խոտ պայծառ նշան, ապա հըստակ կերևան նրանց անունները՝ «Կակաչների դաշտը հեռու» կամ «Անթառամի հովիտը ցածրիկ»: Տերևներին, ցողուններին հավաքեց ժայռերի արանքներում ու ձորակներում, որպեսզի երբ մաշվեն ու խարխուլ դառնան թռչունների բները, նրանք նորոգելու բան ունենան: Եվ հովիտների բացված հողի մեջ՝ գլուլ-գլուլ հատիկների վրա մեկիկ-մեկիկ սերմեր իջեցրեց, որպեսզի երբ անձրևն իջնի ու ամեն կաթիլ հասնի իրեն սպասող հատիկին, ապա նա շուռ գալով լուռ տնակ դառնա, և մինչև գարուն այնտեղ խոր քնի սերմը խաղաղիկ: Իսկ ծաղկաթերթերին ու բույրերին տարավ, պահեց տատիկների գոգնոցների գրպաններում, որպեսզի երբ թոռնիկները քնեն գլուխները տատիկների գոգերին, նրանցից ծաղկի բույր առնեն:



**ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ**

# Պատանեկություն

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Թուխպ էր, անձրև ու աշուն,
Կռվում էինք տղերքով,
Մեր դպրոցի ողջ բակում
Լճակներ՝ լի երկնքով:

Անձրևակաթ ու քրտինք
Խառնվել էին իրար,
Մենք ընկնում-ելնում էինք,
Մեր մեջ թախծի պես բան կար:

Ինչ կռիվ էր՝ չեմ հիշում,
Գուցե խաղ էր ու կատակ,
Կամ միգուցե այդ աշուն
Մեր մեջ վեճ էր ծնվել տաք:

Ու հորդ անձրև էր մաղում
Մեր շորերին ցեխոտված:
... Զարկեց կայծակը վերում,
Կիսեց երկինքըն, իջավ ցած:

Իջավ, կիսեց աշխարհը՝
Մի կողմում թուխպ ու անձրև,
Մյուս կողմում պայծառ էր,
Խորունկ երկինք ու արև:



Ու մեկ էլ կառքն էր ճերմակ
Անձրևի տակ գլորվում.
Անիվնե՞րն էին նրա,
Թե՞ անձրևն էր կտկտում:

Միայն, միայն ես տեսա
Խաղը ոսկի այն անվի,
Լծված էին կառքին այդ
Երեք ճերմակ-ճերմակ ձի:

Ամբողջ կառքն էր կառուցված
Փաթիլներից բյուրեղ ձյան:
Պատուհանից ես միայն
Տեսա Համմիկ աղջկան:

Նա ինչ-որ բան շշնջաց՝
Փոխվեց անձրևը երգի,
Ու տղերքին ես թողած՝
Անցա այն կողմն աշխարհի:

Անցա այն կողմն աշխարհի՝
Տեսա երկինքը լազուր,
Ինձ ժպտացին շուրթերն իր՝
Երկու սրտիկ, երկու քույր:

Ու ցատկեցի ես կառքի
Բյուրեղապակ սանդուղքին,
Ու եռյակը ձիերի
Հասավ աստղոտ երկնքին:

Մի պահ դարձա տղերքին.
Դեռ կռվում էին նրանք,
Ասի՝ տղերք, գնացի,
Ասի՝ բարով դուք մնաք:

Ու սլացավ կառքն, հալվեց
Արեգակի շողերում,
... Ես արթնացա, իսկ դրսում
Ծիածան էր ու գարուն:



**ԱՇՈՏ ՍԱՐԳՍՅԱՆ**

# Մովսես Խորենացի

Ոչ մի թագավոր, ոչ մի բանակ և ոչ մի հաղթանակ հայ ժողովրդի պատմական ճակատագրի համար այնպիսի դեր չի խաղացել և չէր կարող խաղալ, ինչպիսի դեր խաղաց հայոց գրերի և գրականության ստեղծումը Մեսրոպ Մաշտոցի կողմից 5-րդ դարի սկզբին:

Եթե Մաշտոցը կոեց և ժողովրդին պարգևեց նրա հետագա գոյատևումն ապահովող սուրը, ապա նրա բազմաթիվ աշակերտներից մեկը՝ Մովսես Խորենացին, այդ սուրը բռնող ամենահաղթ բազուկներից մեկը եղավ:

Իր երախտապարտ հաջորդների կողմից Մովսես Խորենացին ստացել է ամենապատվավոր անունը՝ «Պատմահայր», նրան կոչել են նաև «քերթողահայր», «մեծ փիլիսոփա», «տիեզերահռչակ քերթող», «հայ Հերոդոտ» (Հերոդոտը ամենանշանավոր հույն պատմաբանն է, որ ապրել է մ. թ. ա. 5-րդ դարում և առաջինն է կոչվել պատմահայր):

Մովսես Խորենացու կենսագրության վերաբերյալ տեղեկությունները շատ չեն: Հնում ազնվական ծագում չունեցողները իբրև ազգանուն կրում էին այն բնակավայրի անունը, որտեղ ծնվել էին կամ երկար ժամանակ գործել: Խորենացի կոչվելը հիմք է տալիս ենթադրելու, որ նա ծնված պետք է լինի Տարոն գավառի Խորնի (Խորոնք), կամ Սյունիքի Խորեա (Խորեան) գյուղում: Տեղական դպրոցում նախնական կրթությունը ստանալուց հետո նա իր ուսումը շարունակել է Հայաստանի մայրաքաղաք Վաղարշապատում: Այստեղ Մովսես Խորենացին աշակերտել է Մեսրոպ Մաշտոցին և Սահակ Պարթևին: Սահակ Պարթևն այդ ժամանակվա Հայոց կաթողիկոսն էր և Մաշտոցի հետ միասին մեծ գործ էր անում հայկական դպրոցներ բացելու, հայ գրականության ստեղծման, մանկավարժության, թարգմանության և լուսավորության բնագավառում ընդհանրապես: Շուտով պատանի Մովսեսը ջանասիրության, ընդունակությունների և ձեռք բերած գիտելիքների շնորհիվ դառնում է իր մեծ ուսուցիչների սիրելի աշակերտներից մեկը: Մաշտոցն ու Սահակը իրենց լավագույն և խոստումնալից աշակերտներին ուղարկում են արտասահման՝ բարձրագույն կրթություն ստանալու: Դրանց մեջ էր նաև Մովսես Խորենացին:

Ուսանողների խումբը դուրս է գալիս հայրենիքից 431 թ-ից հետո, հավանաբար 432-ին կամ 433-ին: Նրանք գնում էին ուսանելու Եգիպտոսի Ալեքսանդրիա քաղաքում, որն այդ ժամանակվա հունական մշակույթի և գիտության ամենահայտնի կենտրոնն էր: Ալեքսանդրիան հայտնի էր իր աշխարհահռչակ գրադարանով:

Խորենացին բավականին մանրամասն նկարագրում է իրենց ճանապարհորդությունը: Նա այդ սկսում է գեղեցիկ մի համեմատությամբ, որը ցույց է տալիս հեղինակի անբավ սերն ու ակնածանքը իր սիրելի ուսուցիչների նկատմամբ: Մաշտոցին ու Սահակին նա նմանեցնում է արեգակի, իսկ իրենց՝ երկնային մարմինների, որոնք ամբողջ ճանապարհորդության և ուսումնառության ընթացքում ողողված էին նրանց հոգևոր ճառագայթներով:

Մինչև Ալեքսանդրիա հասնելը խումբը մի որոշ ժամանակ մնում է Հյուսիսային Միջագետքի Եդեսիա քաղաքում, ուսումնասիրում նրա հարուստ արխիվները, որտեղ շատ փաստաթղթեր կային նաև Հայաստանի պատմության վերաբերյալ: Ապա անցնում են Պաղեստին, այցելում Երուսաղեմ քաղաքը, այնտեղ մի քիչ ավելի երկար ժամանակ ուսանելուց հետո, վերջապես ուղևորվում են Ալեքսանդրիա: Վառ գույներով է Խորենացին նկարագրում նաև Նեղոսի դելտայի վրա փռված չքնաղ Ալեքսանդրիան: Դրանով նա կարծես թե երախտիքի տուրք է մատուցում իրեն կրթած և հոգևոր սնունդ տված գիտության և մշակույթի այդ հիանալի օջախին: Հակիրճ ու զուսպ, բայց նաև շատ իմաստալից նա ընդամենը մեկ նախադասությամբ հիշում է նաև Ալեքսանդրիայի իր ուսուցչին:



Սակայն այդ մեկ նախադասությունն այնքան դիպուկ է, այնքան շատ բան ասող, որ իսկույն ընթերցողի աչքի առաջ կանգնում է «պես-պես գիտությունների» տիրապետող Ալեքսանդրիայի ամենահայտնի գիտնականը, որի մոտ բոլորը գնում էին խորհուրդ հարցնելու, և որին հեղինակը կոչում է «Նոր Պղատոն»[1]:

Ալեքսանդրիայում Խորենացին սովորել է հավանաբար 5—6 տարի: Նա ստացել է իր ժամանակի համար ամենափայլուն կրթությունը, գերազանց տիրապետել մի քանի լեզուների և մանավանդ՝ հունարենին, ինչպես նաև այդ ժամանակ ավանդվող բոլոր կարևոր գիտություններին: Երկար ժամանակ օտարության մեջ մնացած Խորենացին և իր ընկերները անհագ կարոտով էին լցվել իրենց հայրենիքի և ուսուցիչների նկատմամբ: Նրանք շտապում էին վերադառնալ և իրենց ստացած գիտելիքներով ծառայել մայր ժողովրդին և ուսուցիչներին: Ուսումն ավարտելուց հետո նրանք իսկույն նավ են նստում, որպեսզի գնան Հունաստան, իսկ այնտեղից անցնեն Հայաստան: Ճանապարհին, սակայն, եղանակը փոթորկվում է ու նրանց նավը քշում դեպի Իտալիա: Հայ ուսանողների խումբը կարճ ժամանակ մնում է Հռոմում և ապա շտապում Աթենք: Այստեղ էլ, սակայն, ստիպված են լինում մի քանի ամիս ուշանալ ձմռան պատճառով: Վերջապես անցնում են Կոստանդնուպոլիս, ինչպես Խորենացին է գրում՝ «փափագելով հասնել մեր հայրենիքը»:

Երիտասարդական ավյունով, անսպառ խանդավառությամբ, խիզախ և համարձակ ծրագրերով, հույսերով և սպասումներով լի Խորենացուն, սակայն, այլ բան էր սպասում իր հայրենիքում: Մահացել էին նրա սիրելի ուսուցիչները՝ Մեսրոպ Մաշտոցը և Սահակ Պարթևը: Սա արդեն ամենածանր հարվածն էր:

Իր «Հայոց Պատմության» վերջում Մովսես Խորենացին ողբում է սիրելի ուսուցիչների մահը: Երևի ոչ մեկը գեղարվեստական այդպիսի վարպետությամբ, այդքան հուզիչ ու ատառուչ չի ողբացել իր ուսուցիչներին: Սակայն դա միայն ողբ չէ: Այդ տողերից նաև երևում է, թե Մեսրոպ Մաշտոցն ու Սահակ

[1] Պղատոնը հին Հունաստանի ամենահայտնի փիլիսոփաներից մեկն է. ապրել է մ. թ. ա. 5 — 4 դարերում:

Պարթևը ինչպիսի մեծություններ են եղել հայ ժողովրդի համար և ինչպիսի կարևոր դեր խաղացել նրա կյանքում:

Հայրենիք վերադառնալուց հետո Խորենացու կյանքի մասին քիչ բան է հայտնի: Մեզ են հասել միայն նրա շուրջն հյուսված ավանդությունները:

Ըստ այդ ավանդություններից մեկի՝ երբ Խորենացին հայրենիք է վերադառնում և տեսնում այստեղ տիրող վիճակը, մուրացկանի կերպարանք առած, ցնցոտիներով շրջում է գյուղից գյուղ: Նրա աշակերտակից ընկերները երկար ժամանակ նրան փնտրում են, չեն գտնում և սգում են իրենց ընկերոջ կորուստը: Մի անգամ Հայոց կաթողիկոս Գյուտը (որ նույնպես Խորենացու նախկին դասընկերներից էր) այցելում է Օշական գյուղը: Այստեղ տեղի իշխանը և ժողովուրդը նրա պատվին ճոխ ընթրիք են կազմակերպում: Մի անկյունում աննկատ նստած է լինում նաև ցնցոտիների մեջ, բայց պատկառելի դեմքով մի ծերունի, որին իր աշակերտից բացի ոչ ոք չէր ճանաչում: Ճատերն են կաթողիկոսի պատվին երգում կամ ճառեր ասում: Վերջապես դիմում են նաև անկյունում նստած ծերունուն.

**— Ով հարգարժան ծեր, որևէ բան ասա հայրապետի պատվին:**

**Նա պատասխանում է.**

**— Ես օտարական եմ,— և համբուրում է կաթողիկոսի մազերը: Սակայն երբ շարունակում են պնդել, նա հանպատրաստից այնպիսի մի սքանչելի երգ է հորինում և երգում, որ բոլորը զմայլվում են և քարանում: Սկսում են հետաքրքրվել, թե ով է այդ հանճարեղ ծերունին: Այդ ժամանակ նրա աշակերտն այլևս չի համբերում.**

**— Ով սուրբ հայր, սա ձեր կորցրած Մովսեսն է, Սահակի և Մեսրոպի աշակերտը,— բացականչում է նա:**

Կաթողիկոսը, որ երեսուն տարի չէր տեսել իր ընկերոջը, տեղից վեր է թռչում, փաթաթվում է նրան, արտասվում ուրախությունից: Նա Խորենացուն արքեպիսկոպոս է ձեռնադրում և իբրև թե խնդրում, որ նա գրի Հայոց պատմությունը:

Մովսես Խորենացին հունարենից և այլ լեզուներից հայերենի է թարգմանում շատ գրքեր, նաև ինքն է գրում ինքնուրույն աշխատություններ: Նրա համբավը հասնում է հայ հզոր իշխաններից մեկին՝ Սահակ Բագրատունուն: Նա պատվիրում է Խորենացուն գրել Հայոց պատմությունը սկզբից մինչև իր ժամանակը:

Այսպիսի մի խիստ դժվարին գործ նախաձեռնելու համար պետք էր ոչ միայն Խորենացու հանճարը և գիտելիքները, այլև նրա խիզախությունը, համարձակությունը և անսպառ եռանդը: Մինչ այդ ուրիշ հայ պատմիչներ ևս գրել էին Հայաստանի պատմության մասին, ինչպես, օրինակ՝ Կորյունը, Ագաթանգեղոսը, Փավստոս Բուզանդը, Եղիշեն: Բայց նրանց գործերը նվիրված էին Հայոց պատմության այս կամ այն կարճ ժամանակահատվածին, կամ կարևոր մի իրադարձության: Նրանք գրել էին կամ այն մասին, ինչ իրենք էին տեսել, կամ՝ ինչ լսել էին իրենց մեծերից: Խորենացին առաջինն էր, որ գրեց Հայ ժողովրդի պատմությունը՝ սկսած անհիշելի ժամանակներից մինչև 5-րդ դարը:

Նման մի պատմություն գրելու համար պատմիչի ձեռքի տակ պետք է լինեին աղբյուրներ, այսինքն՝ ավելի հին և հնագույն շրջանի վերաբերյալ գրված պատմություններ, զանազան փաստաթղթեր, արխիվներ և այլն: Այդպիսի գրվածքներ հին Հայաստանում կային: Սակայն, երբ 4-րդ դարի սկզբում հին հեթանոսական կրոնը փոխարինվեց նոր կրոնով՝ քրիստոնեությամբ, հին մշակույթի հուշարձանները, այդ թվում նաև գրքերը, ոչնչացվեցին: Դրանից շատ քիչ բան էր հասել Խորենացու ձեռքը:

Պատմահորը, սակայն, այս դժվարությունները չեն սարսափեցնում: Նա իրոք որ մեղվաջան աշխատանքով գործի է կպչում: Իր Պատմության մեջ նա հիշատակում է ավելի քան քառասուն աղբյուր, որոնք կարողացել էր գտնել և օգտագործել: Բայց դա բավարար չէր: Եվ նա հավաքում է ժողովրդական բանավոր ավանդություններ, առասպելներ, զրույցներ, լսում է գուսանների երգերը մեր հին թագավորների մասին, կարդում քարերի վրա գրված արձանագրությունները, դիտում ժողովրդի սովորությունները, ստուգաբանում բառեր և անուններ: Իր ուղեղում ամբարած այս հսկայական նյութերը նա քննում է, համեմատում միմյանց հետ, առանձնացնում ճիշտը սխալից, հավանականը՝ անհավանականից, անհավաստին՝ հավաստիից: Այդ տիտանական աշխատանքի արդյունքը եղավ այն, որ նա ստեղծեց հայ ժողովրդի հերոսական պատմությունը, որը կոչվեց «Մովսես Խորենացու Հայոց պատմություն»: Այն դարձավ հայ գրականության պսակը և հայ պատմագրության գագաթը:

Ամբողջ միջնադարի ընթացքում, ավելի քան 1300 տարի, որևէ մեկին չհաջողվեց գերազանցել Խորենացուն: Ողջ միջնադարի ընթացքում, նաև նոր ժամանակներում, դա մի

նաց պատմության դասագիրք հայկական դպրոցների համար: Եվ ոչ միայն դպրոցների, նաև հետագա հայ պատմիչների համար: Այսօր էլ պատմաբանները հաճախ են դիմում Խորենացու Պատմությանը՝ հայ ժողովրդի հնագույն պատմությունն ուսումնասիրելիս, և ամեն անգամ նրա մեջ նոր, հետաքրքիր փաստեր գտնում:

Խորենացու գործը մի կախարդական հայելի է, որը հայ ժողովրդին ցույց տվեց իր հերոսական անցյալը, սովորեցրեց տոկալ, պայքարել, հերոսանալ և՛ կռվում, և՛ ստեղծագործ աշխատանքում: Հիշենք Խորենացու բազմաթիվ հերոսական կերպարներից մի քանիսին:

**Հայոց Հայկ նահապետը չհնազանդվեց, երբ Բելը ուզեց նրան իր իշխանության տակ առնել: Իսկ երբ բռնակալը փորձեց ուժով անել այդ, Հայկը չհապաղեց. իր ունեցած խիստ նվազ ուժերով դուրս եկավ նրա բազմահազարանոց բանակի դեմ: Լայնալիճ աղեղից արձակած Հայկի երեքթևյան նետը ճեղքեց Բելի պղնձյա զրահները և նրան գետին տապալեց:**

**Արամը բազմաթիվ հաղթական կռիվներով ընդարձակեց Հայաստանի սահմանները և հրամայեց ամենուր հայերեն խոսել:**

**Արա Գեղեցիկը չհրապուրվեց և չխաբվեց Շամիրամի խոստումներով և գերադասեց վսեմաբար մեռնել կռվի դաշտում, քան վայելել օտարի փառքը:**

**Հայոց Զարմայր նահապետը քաջաբար կռվեց և նահատակվեց տրոյական պատերազմում:**

**Պարույրն իր քաջության և խոհեմության շնորհիվ դարձավ Հայոց առաջին թագավորը:**

**Խարտյաշ, գանգրահեր, քաղցր նայվածքով, ուժեղ սրունքներով, վայելչակազմ և թիկնավետ Տիգրանը ոչ միայն մեր ազգը հանեց օտարի լծի տակից, այլև երեկվա բռնակալներին իրեն ենթարկեց: Նա այնպես շենացրեց և հարստացրեց երկիրը, որ «տգեղները գեղեցիկների նման սքանչելի էին երևում, իսկ գեղեցիկները դյուցազունների էին նմանվում»: «Եվ ո՞վ չի ձգտի նրան նմանվել»,— ոգևորված բացականչում է Խորենացին:**

Պատմահայրն իրավացի էր: Շատերը ձգտեցին նմանվել նրա հերոսներին, ամբողջ հայ ժողովուրդը դաստիարակվեց նրա գրքով, դրա համար էլ կարողացավ ապրել և հարատևել:

**ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ**

# Բարի թզուկն ու պարկապզուկը

Հեռավոր կղզում
Ապրող մի թզուկ
Գտավ աննման մի պարկապզուկ:
Ինչքա՜ն էր ուզում բարի թզուկը
Նվագել գտած պարկապզուկը...

Բայց որովհետև թզուկ էր բարի,
Բոլորի կյանքով ապրում էր, հուզվում,
Համոզված էր, որ պիտի խանգարի
Բնակիչներին հարազատ կղզու:
Ահա թե ինչու
Առավոտը շուտ
Թզուկը ելավ փոքրիկ տնակից
Եվ առաջինը, ում դուռը բախեց՝
Դուռն էր վաղեմի դրկից թութակի.
— Տունս ավլել եմ,
Մաքրել, հավաքել
Եվ շատ եմ ուզում հիմա նվագել:
Եթե դեմ չես դու ու չեմ խանգարի...
— Նվագի՛ր, թզուկ,
Ինձ չես խանգարի:
— Ուրեմն դեմ չես:
Գո՛հ եմ, անչա՜փ գո՛հ:
Գնամ բոլորին հարցնեմ հերթով.
Մեկ է՝ զբաղված լինեմ, թե պարապ,
Որ ոչ ոք չասի՝ գլուխս տարավ...
Թզուկը գնաց ու դիմեց այծին,
Փղին, կապիկին, զեբրին, առյուծին.
— Տունս ավլել եմ,
Մաքրել, հավաքել
Եվ շատ եմ ուզում հիմա նվագել:
Եթե դեմ չեք դուք ու չեմ խանգարի...
Բոլորը հերթով ժպտացին բարի,
Ու նրանց միջի մորուքավորը
Մկկաց այսպես.
— Աննմա՜ն օր է:
Այսպիսի մի օր, անկեղծ եմ ասում,
Պարկապզուկն է միայն պակասում...
Հետո թզուկը դիմեց մրջյունին,
Շեկլիկ աղվեսին ու ռնգեղջյուրին:
Հարցրեց օձին, վագրին, ագռավին,
Գետաձիուն ու սև մոշահավին...
Եվ մինչ թզուկը,
Թզուկն անննկուն,
Շրջում էր կղզում, կարծիք հավաքում,
Արևն էր մտնում, մարում էր օրը,
Քնելու էին պատրաստվում բոլորը:



Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

Իսկ երբ կդզին է քնելու պառկել,
Թզուկն ի՞նչ սրտով պիտի նվագեր...
Քնում էր ինքն էլ,
Քունը խաղաղ էր,
Ոչի՛նչ, ամեն ինչ կսկսի վաղը...

Վաղն սկսվում էր,
Ամեն ինչ նույնն էր,
Թզուկն էլ ուրիշ ոչ մի հոգս չուներ:
Վազվզում էր հա, կարծիք հարցնում,
Բայց դե բոլորին տեսնել չէր հասցնում:
Արևն էր մտնում, մարում էր օրը,
Ու քնում էին կրկին բոլորը...
Թզուկը հոգնած իր տուն էր գնում,
Պառկում էր տխուր ու տխուր քնում,
Ու երազի մեջ նստած մի քարի
Պարկապզունկն էր նվագում նա իր,
Բայց անչա՛փ կամաց,
Միա՛յն իր համար,
Որ չլինի թե մեկը ձանձրանա
Ու ասի հանկարծ՝ գլուխս տարա՛վ...

## Ուրախ լուր

Ուրախ մի լուր, ուրախ մի լուր,
Հենց նոր ճամփա ելած մի լուր,
Որոնում էր ինչ որ հասցե
Ու թափառում էր դռնեդուռ:

Լուրը ուրախ գնաց, գնաց
Ու հանդիպեց մի աղջկա,
Աղջիկն ուրախ ժպտաց նրան,
Ժպտաց նրան ու քրքջաց:

Հետո լուրն ու քրքիջը այդ
Արդեն մեկտեղ ճամփա ընկան,
Ճամփա ընկան, ճանապարհին
Մի չքնաղ ուրախ տղա գտան:

Ուրախ լուրն ու քրքիջը տաք,
Երբ նրա դեմ ելան հանկարծ,
Ժպտաց տղան անչափ ուրախ՝
Ուրախությամբ իր նոր գտած...

Ասում են, թե մինչև հիմա
Նրանք հայտնվում են ամենուր.
Ուրախ աղջիկն, ուրախ տղան
Եվ նրանցով ուրախ մի լուր:

ՎԱԶԳԵՆ ՊԵՏՐՈՍՅԱՆ



Թորոսյան Սեդան իր անվան դիմաց ուսուցիչների փոխարեն գնահատականներ էր նշանակել, հետո տեղափոխել օրագրի մեջ, օրագիրը ցույց տվել ծնողներին, և նրանք էլ ստորագրել էին: Նրա արարքը շատ շուտ հայտնի դարձավ: Կեղծված գնահատականները չեղյալ համարվեցին, իսկ Սեդայի արարքի մասին տեղյակ պահվեց ծնողներին: Սակայն դրանով գործը չավարտվեց: Թորոսյան Սեդան պիոներ էր, և նրա հարցը քըննարկման դրվեց դրուժինայի խորհրդի նիստում:

Ավագ ջոկատավարը խոսեց տաքացած, խիստ և համոզիչ: Սեդայի ճակատին քրտինքի կաթիլներ հայտնվեցին. «Ի՞նչ անեմ,— մտքում տանջվում էր Սեդան:— Չլինեին այդ գնահատականները: Սատանա էր մտել մեջս»:

Հետո ոտքի ելավ դրուժինայի խորհրդի նախագահ Կարլեն Պողոսյանը.

— Դե, ինչպե՞ս վարվենք Սեդայի հետ,— դիմեց նա ներկաներին:

— Ինչպե՞ս թե՝ ինչպես,— բարկացավ ավագ ջոկատավարը:— Հեռացնել պիոներական կազմակերպությունից:

— Ես միանում եմ ավագ ջոկատավարին,— բացականչեց Սամվելը:— Առաջարկում եմ քվեարկել:

Ձայն խնդրեց Հայկը՝ դպրոցի կոմերիտմիության ներկայացուցիչը:

— Ինչո՞ւ Սեդային հեռացնել պիոներական կազմակերպությունից,— բոլորովին անսպասելի ասաց նա:— Եթե մեկը սխալ է գործում, պետք է այնպես անել, որ նա հասկանա իր սխալը և զղջա: Մի՞թե Սեդայի արցունքները չեն վկայում, որ նա զղջացել է: Ես առաջարկում եմ պարտադրել Սեդային առաջիկայում իրոք արժանանալ իր իսկ նշանակած գընահատականներին և հետագայում էլ միայն լավ սովորել: Իսկ այս օրը նա կհիշի ամբողջ կյանքում: Դա էլ կլինի նրա պատիժը:

Հայկի առաջարկը հավանության արժանացավ:

Հարցը քվեարկության դնելուց առաջ, Կարլեն Պողոսյանը նորից նայեց դպրոցի դիրեկտորին: Դիրեկտորն առաջվա նման խաղաղ էր: Ավագ ջոկատավարից բացի բոլորը քվեարկեցին հօգուտ Հայկի առաջարկի:

Սեդան մտքում շնորհակալ եղավ ընկերներից:

Մտածեց՝ իր հետագա վարքով այնպես անել, որ այս սև բիծը ջնջվի իր վրայից:

Հետևյալ օրը, ամոթից գլուխը կախ՝ մտավ դպրոց: Առաջին պատահողը՝ հարևան դասարանից մի աղջիկ, թևանցուկ արեց նրան և ականջին շշնջաց. «Լսիր, էդ ո՞նց ես անում, ինձ էլ սովորեցրու, էլի՞, գնահատական կեղծել»: Կարծես դույլով ջուր լցրեցին նրա գլխին: Սեդան ոչինչ չասաց, թևն ազատեց, մտավ դասարան: Դասի ժամանակ չէր կարողանում կենտրոնանալ, որ լսի, դասամիջոցներին դասարանից դուրս չեկավ: Դասընկերներից ոչ ոք չմոտեցավ նրան, հետը չխոսեց, չէին նկատում գոյությունը, արատավոր էին համարում, չէին ուզում հետը գործ ունենալ: Հենց դասերն ավարտվեցին, գրքերն հավաքեց, դուրս գնաց, ոչ ոք չընկերացավ նրան (դա դեռ քիչ էր, հետևից էլ քրքիջներ լսեց: Գուցե իրեն չէին վերաբերվում, բայց թըվաց, թե իր վրա են ծիծաղում):

Նա գնաց տուն և դպրոցում այլևս չերևաց: Շաբաթվա վերջում դպրոց եկավ մայրը և երկար փակվեց դիրեկտորի հետ նրա առանձնասենյակում, այնտեղից լսվում էր մոր հուզված, լացախառն ձայնը:

Օրեր հետո հայտնի դարձավ, որ Սեդայի մայրը, դպրոցի դիրեկտորի հետ խորհրդակցելուց հետո, նրան տեղափոխել է ուրիշ դպրոց: «Նոր դպրոցում չեն ճանաչում, կշարունակի խարդախությունները, մինչև որ այնտեղ էլ բռնվի, հետո էլ կգնա մի ուրիշ դպրոց»,— ասում էին նրա հասցեին իր նախկին դպրոցում, նախկին դասընկերներն ու դասընկերուհիները:

Ավարտվեց ուսումնական տարին: Դըպրոցում Սեդային համարյա բոլորը մոռացել էին, նույնիսկ իր նախկին համադասարանցիները, երբ դպրոցականների հա



Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

մաքաղաքային օլիմպիադայում մաթեմատիկայի գծով մրցանակ շահածների մեջ հանդիպեցին Սեդայի անվանը:

— Մենք մեր վերաբերմունքով ստիպեցինք նրան գնալ մեր դպրոցից, իսկ նա կարողացավ ուղղել ինքն իրեն և ամոթով թողնել մեզ,— ասաց դասղեկը, երբ դասամիջոցին Սեդայի դասընկերները շրջապատեցին նրան ու խոսք բացեցին Սեդայի մասին,— թող այս դեպքը մեզ համար էլ դաս հանդիսանա, սխալվողին պետք է ամեն կողմից, ամեն մեկն օգնի, որ նա ուղղի իր սխալը, ոչ թե ամեն կողմից քարկոծելով վանել, վայրենացնել նրան, հնարավորություն չտալով ինքն իրեն գտնել:

— Մեր մտքով չէր անցնում,— թոթովեցին ընկերները:

— Իմ մտքով էլ չէր անցնում,— խոստովանեց դասղեկը,— մենք բոլորս սըխալվեցինք: Նրան ուղղելու համար ոչինչ չարվեց, համարեցինք անուղղելի:



# Պապիս անտառը

«Այս ամառ,— պատմում է Գորիսի № 2 դպրոցի աշակերտ Արարատ Բաբաջանյանը,— ես դարձյալ գնացի գյուղ՝ պապիս մոտ: Այստեղ է ծնվել իմ հայրը, իմ պապը, պապիս հայրը՝ Ասատուր Բաբաջանյանը: Ես տեսել եմ նրան: Իննսունյոթ տարի ապրեց և մեռավ բահը ձեռքին: Արամայիս պապըս պատմում է, որ նա ութսունհինգ տարի անդադար աշխատել է: Իր այդ աշխատասիրությունը նա փոխանցել է պապիս: Պապս քառասուներկու տարի Վաղատուրի կոլտնտեսության հաշվապահն է եղել: Բայց գյուղում ոչ ոք չի կարողացել նրա պես խոտ հնձել: Այնպես արագ է աշխատել ու այնպես երկար, առանց հոգնելու, որ անունը դրել են «կոմբայն»: Պատերազմի ժամանակ կոմբայնի պես էլ հնձել է ֆաշիստ ճիվաղներին: Ծան որդիները հինգ անգամ վիրավորել են պապիս, բայց չեն կարողացել սպանել:

Վիկտորյա տատիս հետ մեծացրել են վեց երեխա: Թոռների կողմից էլ են հարուստ՝ մեր թիվը քսան է: Պապըս թոշակի է անցել, բայց առաջվա եռանդն ու կորովը տեղն է: Ով չի հավատում, կարող է գալ Գորիսի Վաղատուր գյուղ՝ իր աչքով տեսնելու...

Պապիս տունը գյուղի ծայրին է, հենց սարի տակ: Բայց նրան տանը չեք գտնի: Հաստատ սարում կլինի՝ տան կողքի սարում: Նա տատիս հետ ծառ է տնկում, անտառ է հիմնում:

Տա՜տս... Հեզ ու փոքրամարմին է, բայց իր աշխատասիրության համար շրջանում անվանի ծխախոտագործի անուն ունի: Մի քանի անգամ դեպուտատ է ընտրվել: Շատ-շատ է տատիս գործը, բայց էլի հասցնում է

պապիս օգնել: Երկուսն էլ անսահմանորեն սիրահարված են մեր բնությանը, ծառ ու թփին, կանաչ գույնին: Մի տեսնեիք ոնց էին ոգևորվել, երբ անտառտնտեսությունը բավարարեց պապիս խնդրանքը և այդ չոր ու ցամաք սարը «տվեց» նրան: Երեք հազար հատ էլ տնկիներ էին տվել՝ դեկորատիվ, պտղատու, ու ասել. «Եթե տեսնենք, որ սարը իսկապես անտառ է դառնում, էլի կտանք»:

Պապիս քուռը, որ առանց այդ էլ փախած էր, այդ օրվանից լրիվ կորավ: Առավոտյան ժամը 5-ին արթնացնում է տատիս, հայրիկիս, ինձ ու՝ հայդա՜, դեպի սարը: Ինչքան քարուքռա հավաքեցինք այդ ամառ, ո՜նց մաքրեցինք սարը... Իսկ հետո քանի-քանի հարյուր անգամ եմ բարձրացել ու իջել այդ սարը՝ ջրի դույլերը ձեռքիս...

Այսօր ով տեսնում է, թե ինչ կանաչի մեջ է թաղվել սարը, աչքերին չի հավատում: Ճշմարիտն ասած՝ երկու տարի առաջ իմ հավատն էլ չէր գալիս, բայց հիմա...

Եղևնիներն ու մրգատու ծառերը արդեն մի քիչ բոյ են քաշել: Բայց էլի խնամք է պետք, նորերը տնկել է պետք... Ջրի հարցն էլ է լուծվել՝ էլ դույլերի կարիք չկա: Այս գարնանը պապս իր միջոցներով բակում մի լավ պոմպ տեղադրեց, որով գետակի ջուրը խողովակներով բարձրանում է սարը ու մի քանի տեղ վեր տնկված ձողերից գեղեցիկ պտույտներով ցայտում կանաչի, դալար տնկիների վրա: Մի խոսքով՝ «պապիս սարը» արդեն կատարյալ պարտեզի է նմանվում: Միշտ էր ասում պապս, «Առանց քոլը նի մտնիլի, զկեռ քաղիլ չես»:

Պապս պինդ է, առողջ: Նրա հանգիստը, նրա հաճույքը աշխատանքի մեջ է, համառ աշխատանքի մեջ, և նրան ի՞նչ սար կդիմանա... Նա դեռ ինչքա՜ն գործ ունի անելու:

Չեմ կարող հաշտվել այն մտքի հետ, որ տարիներ հետո կգա մի օր, որ ես կլինեմ, իսկ նրանք՝ պապս ու տատս, այլևս չեն լինի... Դալար տնկիները ամուր ծառեր կլինեն դարձած: Անտառ կլինի մեր գյուղի դիմաց, գեղեցիկ, սոսափող անտառ, պապիս ու տատիս ձեռքերով կյանքի կոչված անտառ»:

ԱՎԵՏԻՔ ԱՌԱՔԵԼՅԱՆ

ԶԱՎԵՆ ԲԵԿՅԱՆ

## ՓՈՔՐԻԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ

### Բուն

Այսպես թառած օրնիբուն՝
ի՞նչ է խորհում, տեսնես, բուն,
Թռչուն չէ, այլ՝ գիտնական,
կամ էլ՝ պապիկ իմաստուն:

Աչքերում մութ՝ մութ մտքեր՝
նման խավար ճրագի:
Մի ակնոց էլ թե ճարվեր՝
գուցե կարդար լրագիր:

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵԶՈՒԼՅԱՆԻ

## Ուղտը

Սա ոչ ժայռ է, ոչ քարափ է,
չե՞ք տեսնում, որ ուղտ է սա, ո՛ւղտ,
Ճամփաներ է սիրում չափել՝
անանձնագիր, անփաստաթուղթ...

Սիրում է փուշ, զարդ ու զանգակ,
անապատի կոպիտ նավ է։
Ո՛չ պաղպաղակ, ո՛չ լիմոնադ՝
մի կում ջուրն էլ իրեն բավ է։

Ցատ է տխուր։Սապատի տեղ
թե որ մի զույգ թև ունենար՝
կթռչեր ու ամպե թեթև
քարավանին կմիանար...

## Արծիվը

Ահա, այս էլ ձեզ արծիվ՝
կեռակտուց, լեռնական։
Վերցրեք ներկ ու վրձին
ու մոտեցեք անայլայլ։

Նկարեցեք բա՜րձր լեռ
ու մի խորունկ քարանձավ,
ուր օրորցքում ամրաժեռ
մանկությունը իր անցավ...

Նկարեցեք մե՜ծ երկինք
ու վանդակի բացված դուռ—
թող գնա ու սավառնի
հեռուներում իր մաքուր...

## Ակվարիում

Սրան ասում են ակվարիում...
Ոչ, երկինք է խայտանկար։—
Ի՜նչ աստղեր են վերուվարում՝
Ոսկեթեփուկ, արծաթափայլ...

Ջկան ա՞չք է, թե՝ պղպջակ,
Ասես պիտի ճառագայթի։
Կամա՜ց, կամա՜ց, մի՜ շշնջա,
Թե չէ՝ հանկարծ ու կպայթի...

Սա ձո՞ւկ է, թե՞ ջրի թիթեռ՝
ջրիմուռի վրա նստած,
Ե՛վ զարդ ունի, և՛ նախշուն թև
հուլունքաչյա ու նրբազգաց...

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

# Բազեները ու... ճանճերը

Մի բազե թռավ արևելքից,
Մի բազե թռավ արևմուտքից,
Եկան, օդի մեջ հանդիպեցին
Եվ թռիչքն իրենց ընդհատեցին:
Ոչ բարև առան, ոչ տվեցին,
Ոչ իրար մի բան հարցրեցին,
Փքվեցին մեկեն ու դարձան չար,
Եվ էլ հաշտության չեղավ մի ճար:
Ճանկեցին իրար ու աննահանջ
Արյունոտեցին թևեր ու լանջ
Ու հետո՝ անշունչ, արնաշաղախ,
Մեկը աջ ընկավ ու մեկը՝ ձախ:

Երկինքը մնացել էր ապշած,
Երկինքը մթնեց, ո՞ւր եք դուք, ո՞ւր,
Ձեր ի՞նչն էր, ի՞նչն էր, ի՞նչն էր
պակաս,
Ինչո՞ւ միմյանց դեմ ելաք ագահ:

Բայց լռություն էր ահազարհուր,
Ամայություն էր՝ ծանր ու տխուր,
Ջայներ չէին լսվում արևմուտքից,
Արձագանք չկար արևելքից:

Եվ լռության մեջ համատարած,
Քեֆ էին անում... մի քանի ճանճ:

Մարդկանց վրա ահավոր տպավորություն են թողնում կենդանիների ու թռչունների զանգվածային ոչնչացման դեպքերը, հատկապես երբ դրանք կապված են որոշակի վայրերի հետ: Ինչպես հայտնի է, երկրագնդի վրա կան խիստ առեղծվածային այդպիսի վայրեր: Այնտեղ հայտնվող մարդկանց, կենդանիներին, անգամ թռչուններին արագահաս մահ է սպառնում: Մարդիկ սարսափահար խուսափում են նման վայրերից, սերնդեսերունդ են անցել ավանդույթներ, այդ վայրերի շուրջը սարսափելի առասպելներ են հյուսվել: Այդպիսի վայրեր կան, օրինակ, Ինդոնեզիայում, Ճավա կղզում: Դրանք մահվան չորս քարանձավներ են, որտեղ հաճախ են հայտնաբերում սատկած եղջերուներ, վագրեր: Այս քարանձավներում մեռնում են նաև մարդիկ: Ահա թե ինչպես է նկարագրում Ճավայի «Մահվան հովիտը» հետազոտող Գ. Բյուտցեն. «Այդ փոքրիկ հողակտորի վրա բնությունը կարծես թե իր անեծքն է դրել, և ամեն մեկին, ով գալիս է այստեղ, պատում է ահավոր սարսափ և վախ: Այստեղ ամեն ինչ կործանման ու ամայացման շնչով է բռնված: Մահն այստեղ խփել է իր սև վրանը և տարածել սգո դրոշը: Սարսռում ես, փշաքաղվում, երբ մի հայացք ես գցում այս վայրի վրա, որտեղ ոչ ոք չի ապրում և կործանվում է ամեն մի կենդանի շունչ»: Նման վայրեր կան նաև Իտալիայում, օրինակ՝ Նեապոլի մոտ գտնվող Շան քարանձավը և Վավերնո լճի շրջակայքը: ԱՄՆ-ում հայտնի են Արիզոնում և Իելլոուստոնի մոտ գտնվող Մահվան կիրճերը, որտեղ հաճախ են ոչնչանում մոխրագույն արջերը:

Մեր երկրում, Կամչատկայում գտնվող Կրոնոցկյան արգելանոցի տարածքում, նույնպես կա այդպիսի վայր, որը անվանում են «Մահվան հովիտ»: Դրա զոհերն են դառնում մեծ մասամբ արջերը, կուղբերը, մի շարք մանր կաթնասուններ և թռչուններ: Այդպիսի «սարսափի գոտիներ» կան նաև Սիբիրում և Հեռավոր Արևելքում:

Կամչատկայի «մահվան հովիտը» գտնըվում է Կրոնոցկու արգելանոցի հարևանությամբ՝ տուրիստական և երկրաբանական հայտնի օբյեկտ Հեյզերների հովտում և Ուզոն հրաբխի կալդերոնում: Այն տարածքը, որտեղ հայտնաբերվում են զոհված կենդանիները (դա գտնվում է




ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
կենսաբանական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

# «ՄԱՀՎԱՆ ՀՈՎՏԻ» ԳԱՂՏՆԻՔԸ

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Հեյզերնի գետի վերին հոսանքներում, Կիխպինիչ հրաբխի ստորոտներում) զբաղեցնում է մոտ 2 կիլոմետր երկարություն և 100—300 մ լայնություն: Այստեղ առկա են բազմաթիվ խորունկ, տաշտակաձև փլվածքներ: Տեղ-տեղ երևում են բնածին ծծմբի ելուստներ: Բուսականություն գրեթե չկա, լանջերը ծածկված են բազմամյա ձյունաշերտերով:

Հետազոտողները գտնում են, որ թռչունների և զանազան կենդանիների զանգվածային կործանման պատճառը գազերով, հատկապես ածխաթթվով և ծծմբաջրածնով թունավորվելն է: Շատ հավանական է, որ այդպես է, հատկապես այն դեպքում, երբ կենդանին հայտնըվում է քիչ թե շատ խոր փոսում, որտեղից չի կարողանում դուրս գալ: Ինչպես հայտնի է, այդպիսի վայրերում կուտակվում են կործանարար գազերը՝ ծըծըմբաջրածինը և ածխաթթուն:

Կործանված թռչունների և կենդանիների մեծ մասը հայտնաբերվել են փոսորակների շրջանում, որոնց խորությունը կազմում է 50-ից 100 մետր: Այնուամենայնիվ, այդ վայրերից դուրս գալու ելք կա: Կենդանիները մահացու գազերից կարող են փրկվել, հեռանալով Հեյզերնի գետի վտակների հուներով: Իսկ ինչպե՞ս բացատրել խոշոր կենդանիների՝ արջերի և կուղբերի ոչնչանալը այդ պայմաններում, որտեղից նրանք ազատորեն կարող են փրկվել-հեռանալ: Չպետք է մոռանալ, որ թե՛ ածխաթթու գազը և թե՛ ծծմբաջրածինը դանդաղ են ներգործում և միայն բարձր խտության դեպքում կարող են ուժեղ թունավորում առաջացնել:

Բայց ահա մի փաստ, որը խորհելու տեղիք է տալիս: Կրոնոցկի արգելա-

նոցի անտառապահ Վ. Ա. Նիկոլայենկոն նկատել է, թե ինչպես արջը «մահվան հովտում» ուտելով սատկած կենդանու միսը, ինքն էլ շուտով սատկում է: Հավանաբար, Կամչատկայի «մահվան հովտում» ածխաթթու և ծծմբաջրածնական գազերից բացի առկա են ինչ-որ ուրիշ, ավելի ուժեղ ներգործող գազեր: Կարելի է նախօրոք ենթադրել, որ դա ավելի շուտ կապտաթթու կարող է լինել (ցիանական ջրածին) և նրա հեշտությամբ ցնդող ածանցյալները: Ինչպես հայտնի է, կապտաթթուն և նրա ածանցյալները չափազանց թունավոր և արագ ներգործող են: Դրանք առաջացնում են շնչառական օրգանների կաթված և վայրկենական մահ:

Ակտիվ հրաբխային մի շարք շրջաններում լեռնազանգվածների ճեղքերից դուրս հոսող բարձր ջերմաստիճանային գազերը ուսումնասիրելիս, իրոք, հայտնաբերվել են ցիանական միացություններ, այն էլ հաճախ բավականին զգալի խտությամբ:

Կամչատկայի «Մահվան հովիտը» ևս գտնվում է երկրագնդի այն շրջաններում, որտեղ հրաբխային բավականին ակտիվ գործունեություն է տեղի ունենում: Այստեղ լեռնազանգվածներում բազմաթիվ բեկվածքներ են առաջանում, և մեծ խորություններից վեր են բարձրանում գազային տաք շիթեր:

Հրաբխագիտության ինստիտուտի աշխատակից Գ. Ա. Կարպովը «Մահվան հովտի» շրջանում ուսումնասիրելով օդի գետամերձ շերտերի գազային կազմը, հայտնաբերել է ֆուրմարոլային գազեր, որոնք ունեն տաք հրաբխային ծագում: Դրանք հիմնականում պարունակում են ծծմբային անհիդրիդ, ածխածնի ծծմբական օքսիդ, ծծմբաածխածին: Ցիանական միացությունների առաջացումը ակտիվ հրաբխային գործունեության շրջանում կապված է բարձր ջերմաստիճանների և խորքային գազերի ելքերի հետ:

Մի շարք ուսումնասիրությունների շնորհիվ 1982 թվականին հնարավոր եղավ պարզել, որ «Մահվան հովտի» գազային արտահոսքերում առկա են ցնդող այնպիսի գազախառնուրդներ, որոնք պարունակում են ցիանական խմբի գազեր (հավանաբար՝ ցիանական ջրածին կամ քլորական ցիան): Բացի դրանից, ցիանական ջրածնի խառնուրդներ են հայտնաբերվել բնածին ծծմբի միացություններում, որոնք վերցվել են «Մահվան հովտի» այն հատվածներից, որտեղ նկատվել են կենդանիների մասսայական ոչնչացման դեպքերը:

Այսպիսով, գրեթե պարզված կարելի է համարել Կամչատկայի «Մահվան հովտի» առեղծվածը: Կարելի է ասել, որ պատահականորեն այստեղ թափանցած թռչունների և այլ կենդանիների ոչնչացման պատճառը ամենայն հավանականությամբ ցնդող, արագ ազդող խիստ թունավոր նյութերի առկայությունն է:

Կենդանիների մահվան պատճառ են դառնում նաև կապտաթթուն և քլորական ցիանը:

Երկրագնդի վրա նման վայրերը բավականին շատ են: Մեր դարի 60-ական թվականներին նման սարսափազդու համբավ էր ձեռք բերել նաև Մեքսիկայի հյուսիսային շրջաններում գտնվող Արևելյան Սիերրա Մադրի լեռնաշղթայից սկիզբ առնող Ռիո Բրավո դել-Նորթե գետի վտակներից մեկի հովիտը: Այդ հովտում գիշերողը այնտեղ էլ մնում էր: Զարմանալի էր այն, որ նրա ոսկորները առավոտյան իսպառ մաքրված էին լինում մրկաններից, ջղերից ու կրճիկներից և դրանց նշույլն անգամ հայտնաբերել հնարավոր չէր: Վերջապես գաղտնիքը պարզելու նպատակով իր ընկերների հետ «Մահվան հովիտ» մեկնեց կենդանաբան Սպրուսը: Զգուշության համար նա իր հետ վերցրեց ոչ միայն զենքեր, այլ նաև թունաքիմիկատներ: Գիշերելուց առաջ նրանք նախազգուշական բոլոր միջոցները ձեռնարկեցին, մշտապես հերթապահելով մինչև առավոտ: Կեսգիշերից անց, երբ հսկելու հերթը Սպրուսին հասավ, նա հանկարծ նկատեց, որ անսպասելիորեն իր մարմնի վրա հազարավոր միջատներ են սողում: Լույսի տակ նա պարզ տեսավ, որ դրանք սպիտակ գիշատիչ մրջյուններ են, որոնք տեղացիներին շատ լավ հայտնի են «թախի» անվանումով: Սպրուսը անմիջապես արթնացրեց իր ուղեկիցներին, և նրանք սկսեցին պայքարել «սպիտակ մահվան» դեմ: Նրանց մեծ չափով օգնեցին թունաքիմիկատները, որ Սպրուսը վերցրել էր իր հետ: Մեծ դժվարությամբ նրանք ազատվեցին այդ հրեշավոր գիշատիչներից և թեթևակի վնասվածքներ ստացած շտապեցին հեռանալ «Մահվան հովտից»: Սակայն գաղտնիքն արդեն բացահայտված էր:

(շարունակելի)

# Միայն ընթերցելու պատճառով

«Պիոներ» ամսագրի № 8-ում տպագրված Զորայր Խալափյանի «Շախմատի ձին» պատմվածքը, ինչպես երևում է ընթերցողների խմբագրությանն ուղղված նամակներից ու հեռախոսազանգերից, թյուրիմացության մեջ է գցել նրանց, ովքեր չգիտեն, որ այլ բան է պատմվածքը, այսինքն՝ գեղարվեստական հորինվածքը, որի մեջ պարտադիր չէ, որ անպայման նըկարագրված դեպքերն ու մարդիկ իրական լինեն, և այլ բան է իրական դեպքի շարադրանքը: Ուստի ըստիպված ենք թյուրիմացության մեջ գտնըվողներին ասել, որ Խալափյանի հիշյալ պատմվածքի հերոսները իրական մարդիկ չեն, հեղինակն է հորինել, գեղարվեստորեն մարմնավորել նրանց, որպեսզի հայտնած լինի այն էական միտքը, որ ընկած է պատմվածքի հիմքում:

**«ՊԻՈՆԵՐ»-Ի ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ**



ԴՈՆԱՏԵԼԼՈ (1386—1466 թթ.).
«ԴԱՎԻԹ», ԲՐՈՆԶ, 1430-ԱԿԱՆ թթ.,
ՖԼՈՐԵՆՑԻԱ, ԱԶԳԱՅԻՆ ԹԱՆԳԱՐԱՆ



Լուսանկարը՝ ԱԼԵՔՍԱՆԴՐ ԱԼԱՋՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ. ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.։

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՀԸՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԱՅՎԱԶ-ՅԱՆ Վ.։

ԻՆԴԵՔՍ՝ 77800

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.